ԿԱՂԱՆԴԻ առթիւ Յառաջ երէկ լոյս չտեսաւ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Մարսէյլէն Տիկին Մխլիկեան երեք հազար ֆրանք կը նուիրէ Շաւարշ Միսաքեան սրահին :

(Ստանալ «Յառաջ»էն ) :

Կը խնդրուի ծանուցանել հրամանատար

ՍՄԲԱՏ ՔՈՉՈՒՆԵԱՆԻ

մահը : Յուղարկաւորութիւնը՝ այսօր , Շաբաթ ժամը 10·30ին վալ տը Կրաս մատուռին մէջ, 277պիս, Րիւ Սէն Ժագ :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ազնիւ Պօղեանի մահուան առթիւ, Լիոնէն Պ. Ճ. Պահատուրեան փոխան ծաղկեպսակի հինգ հազար ֆր. նուիրած է Տէսինի աղքատախնամին :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Պ. Տիգրան Թաղոյեան եւ զաւակները՝ ինչպէս նաեւ Այվազեան եւ Ճառայեան ընտանիքները, կուգան ծանուցանել թէ՝ այս կիրակի , 4 Յունուար 1959, Ս. պատարագէն ետք, Փրատոյի Հայոց Մայր եկեղեցին մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրելի կնոջ, մօր, քրոջ, մօրաքրոջ եւ մօրաքրոջաղջկան Տիկին Վազգանոյշ Թադոյեանի (ծնեալ՝ Սամուէլեան) մահուան քառասունքին առթիւ :

Իր յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ :

### ՊԱՏԱՐԱԳ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնս կը ծանուցանէ թէ, այս Կիրակի առաւօտ ժամը 8·30ին Ծնունդի տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ :



## “ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ”Ը

. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը Փարիզի շրջանի մասնաճիւղերով կը տօնէ «Մանուկներու Օրը» , Յունուար 8ին, ժամը 15–18, Սոսիէթէ Սավանթի թատերասրահին մէջ, 28 Րիւ Սէրփանթ, մեթրօ Սէն Միշէլ կամ Օտէոն :

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին .—

Ֆ. Կ. Խաչի Իսիի վարժարանի երգչախումբը, ղեկավարութեամբ ուսուցիչ Ս. Քաջեանի :

Կը ներկայացուի ԴԴՈՒՄԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ : Պերճ Պառաւեանի եւ Ժիրայր Պալանցեանի կողմէ :

Տրամախօսութիւն Առնուվիլի «Անարատ Յղութեան» վարժարանի աշակերտներով :

Արտասանութիւն Օր. Անժէլ Գաբոյեանէ : Պար Օր. Թերէզ Քէօշկէրեանէ եւ փոքրիկներ Արմենուհի Պագըրճեանէ եւ Ազնիւ Քէօշկէրեանէ :

Ջութերգ Նահապետեան քոյրերու կողմէ : Փոքրիկն Արմէն Խաչիկեան իր զուարթ երգերով եւ իր հեղինակած արտասանութիւններով :

ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ ՆԱԽԸՆԹՐԻՔ

Ծանօթ .— Առնուվիլէն օթօքարը կը մեկնի ժամը երկուքին Պ. Նիկողոսեանի խանութին առջեւէն :

— Ալֆորվիլէն օթօքար կը մեկնի ժամը 2·30ին Փլաս Գառնոյէն :

— Շավիլէն օթօքար կը մեկնի ժամը երկուքին Փուէնթ տը Շավիլէն :



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՓԱՐԻԶԻ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՊԱՇՏԱՄՈՒՆՔՆԵՐՈՒ

Յունուար 4 Կիրակի, Ս. պատարագ ժամը տասնին, յետ պատարագի գլխաւոր դասու ընդունելութիւն խորհրդարանին մէջ Ս. Ստեփանոսի տօնին առթիւ եւ ուրարակիր – կիսասարկաւագներու վկայականներու բաշխում :

Յունուար 5, Երկուշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան երեկոյեան սկիզբն. ժամերգութեան ժամը 15·30ին բազմաձայն Ս. պատարագ ժամը 17ին :

Յունուար 6, Երեքշաբթի, Տօն Ս. Ծնընդեան, ժամը ութին, բազմաձայն Ս. պատարագ ժամը տասնին, Ջրօրհնէք ժամը 12ին, կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Սերովբէ Եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ :

Յունուար 7, Չորեքշաբթի, Բ. օր Ս. Ծննդեան, յիշատակ Մեռելոց Ս. պատարագ ժամը տասնին :

×

ՇԱՎԻԼ

5 Յունուար, Բշ.— Խթում, ժամը 15·30ին :

6 Յունուար, Գշ.— Ս. Ծնունդ , սկիզբ ժամը 8·30ին, Ս. պատարագ 10ին :

Երգեցողութիւնները կը ղեկավարէ երաժշտապետ Պ. Ն. Սերգոյեան :

×

ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

5 Յունուար Երկուշաբթի, Ճրագալոյց Ծննդեան, սկիզբ երեկոյեան արարողութեանց ժամը 3·30ին, Ս. պատարագ եւ Նախատօնակ 4·30ին :

6 Յունուար Երեքշաբթի , Ծնունդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ըսկիզբ առաւօտեան արարողութեանց ժամը 7·30ին, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասնին :

7 Յունուար, Չորեքշաբթի, Յիշատակ Մեռելոց , սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8·30ին, Հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասնին, Հոգեհանգիստ ընդհ. ննջեցելոց ժամը 11·45ին :

### ՏՕՆԱԾԱՌ

Իսիի Խրիմեան վարժարանի տօնածառի հանդէսը տեղի կ'ունենայ այս Կիրակի , ժամը 16ին, վարժարանին մէջ :

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ .— Հ. Յ. Դ. Արամ ենթակոմիտէն եւ Շ. Միսաքեան խումբը ընդհ. ժողովի կը հրաւիրեն իրենց շրջանի ընկերները այս Շաբաթ ժամը 21ին, Պուա Քոլոմպի կայարանին ծանօթ սրճարանը :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը Մանուկներու օրը կը տօնէ Յունուար 11ին, Ահարոնեան ակումբին մէջ :

Գեղարուեստական բաժին դպրոցի աշակերտներուն կողմէ :

Կը հրաւիրուին ծնողքները եւ բարեկամներ :

Մուտքը ազատ է :

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Համա – Զարաանձայի Հայր. Միութեան Լիոնի մասնաճիւղի ընտանեկան խնջոյքը նոր տարուան առթիւ, այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երկուքին, Յոյներուն սրահը, 5 Րիւ Պօնըֆուա :

### ՏՕՆԱԾԱՌ

Վիէնի Ֆ. Կ. Խ. մասնաճիւղը Մանուկներու Օրը կը տօնէ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը երեքին, Սէրքըլ Կաթոլիքի սրահին մէջ, Կ. Խաչի երեք դպրոցներու աշակերտներուն կողմէ երգ, արտասանութիւն, մանկական փիէս մը երեք արար :

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի առաւօտ : Կը խօսի պատուելի Սիսլեան : Նիւթ՝ Աստուծոյ հաւատարմութիւնը : Նոյն օրը ժամը 15ին Կաղանդի ծառ :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Պ. Պօղոս Ղարիպեան (որ մեկնած է Փարիզէն) կը խնդրէ հետեւեալներէն իրենց հասցէն հաղորդել .—

Sarkis Yavarovitch
Penzioner Presevo
Serbia, Yougoslavie

Ղազմըղարացի Խնկօ Ճելատեան (Պուէնոս – Այրէս), Ղանթարոսցի Պօղոս Ծրտըլեան (Պուէնոս Այրէս) 1923ին Պէյրութէն Հարաւային Ամերիկա մեկնած են :

Ղազմըղարացի Համբարձում Ենովքեան (լուսանկարիչ, Մարսէյլ) :







Յորդանանի. «այս բոլորին դիմանալու համար՝ առանց պայմանի օգնութեան պէտք ունինք» եզրակացուց Թագաւորը:

× Արտաքին աշխարհի վերջին ան-ցուդարձերուն առիթով հետեւեալ հաչ-ուեկչիրը կը տրուի.— Եգիպտոսի մէջ 150 համայնավարներ ձերբակալուած են, Սուրիոյ մէջ՝ աւելի քան հարիւր հոգի: Խալէտ Պէքթաշ յաջողած է Իրաք փա-խիլ: Սուրիա – Լիբանան սահմանը փակ-ուած է: Պաղտատի մէջ ձերբակալուած են ութ հոգի (երկուքը՝ կին), որոնք կ'ուզէին օդը հանել Քէրքիւքի նաւթուղի-ները: Իրաքեան մայրաքաղաքի վերջին կռիւներուն հետեւանքով 12 հոգի սպան-նուած եւ քան ուրիշներ վիրաւորուած են:

Արեւելեան Գերմանիոյ վարչապետ Կրոթվոլ Գահիրէ պիտի հասնէր Կիրակի օր, իսկ Իտալիոյ Վարչապետ Ֆանֆանի երեքշաբթի:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ
### ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ Ս. ԾՆՈՒՆԴԻ

6 Յունուար, Երեքշաբթի, ժամերգու-թիւն Ս. Ծնունդի եւ Ս. պատարագ, ժա-մը 8 – 12:

10 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, առաւօտ, ժամերգ. ժամը 8·30, երեկ. ժամերգ. եւ Ս. պատարագ երկսեռ խում-բով, ժամը 4·30:

11 Յունուար, Կիրակի, Ս. ԾՆՈՒՆԴ, Ս. պատարագ, բազմաձայն երկսեռ խումբով, Ջրօրհնէք, հոգեհանգիստ Մե-ռելոցի, ժամը 8 – 12:

× Էջմիածինէն ստացուած է Վազգէն Ա. Հայրապետ Հայոց պատկերազարդ ստուար հատորը: Դիմել եկեղեցի:

## ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

Հայ օրիորդ մը դրասենեակի գործ կը փնտռէ (սթէնօ – տաքթիլօ) կամ իբրեւ վաճառորդուհի: Դիմել.— «Յառաջ»ի վարչութեան գրասենեակ:

## "ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ"Ը

. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը Փա-րիզի շրջանի մասնաճիւղերով կը տօնէ «Մանուկներու Օրը», Յունուար 8ին, ժամը 15–18, Սոսիէթէ Սավանթի թատե-րասրահին մէջ, 28 Րիւ Սէրփանթ, մեթ-րօ Սէն Միշէլ կամ Օտէոն:

Գեղարուեստական բաժինին կը մասնակ-ցին.—

Յ. Կ. Խաչի Իսիի վարժարանի երգչա-խումբը, ղեկավարութեամբ ուսուցիչ Ս. Քաջեանի:

Կը ներկայացուի ԴԴՈՒՄԻ ՎԱՃԱՌԱ-ԿԱՆԸ: Պերճ Պառաւեանի եւ Ժիրայր Գա-լանցեանի կողմէ:

Տրամախօսութիւն Առնուվիլի «Անարատ Յղութեան» վարժարանի աշակերտներով:

Արտասանութիւն Օր. Անժէլ Գաբոյեա-նէ: Պար Օր. Թերէզ Քէօշկէրեանէ եւ փոքրիկներ Արմենուհի Պազըրճեանէ եւ Ազնիւ Քէօշկէրեանէ:

Զուգերգ Նահապետեան քոյրերու կող-մէ: Փոքրիկն Արմէն Խաչիկեան իր գը-ւարթ երգերով եւ իր հեղինակած արտա-սանութիւններով:

ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ ՆԱԽԸՆԹՐԻՔ

Ծանօթ.— Առնուվիլէն օթօքար կը մեկնի ժամը երկուքին Պ. Նիկողոսեանի խանութին առջեւէն:

— Ալֆորվիլէն օթօքար կը մեկնի ժա-մը 2·30ին Փլաս Գառնոյէն:

— Շավիլէն օթօքար կը մեկնի ժամը երկուքին Փուէնթ տը Շավիլէն:

## ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Փապուճեան կը նուիրեն հազար ֆրանք Յ. Կ. Խաչին եւ հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչին իրենց ազգա-կանուհին Տիկին Ագապի Սմսարեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի:

Ստանալ «Յառաջ»էն:

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՏՕՆԱԿԱՆ ՕՐԵՐՈՒ ՓԱՐԻԶԻ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՊԱՇՏԱՄՈՒՆՔՆԵՐՈՒ

Յունուար 5, Երկուշաբթի, Ճրագալոյց Ս. Ծննդեան երեկոյեան սկիզբն. ժամեր-գութեան ժամը 15·30ին բազմաձայն Ս. պատարագ ժամը 17ին:

Յունուար 6, Երեքշաբթի, Տօն Ս. Ծը-նընդեան, ժամը ութին, բազմաձայն Ս. պատարագ ժամը տասնին, Ջրօրհնէք ժա-մը 12ին, կը պատարագէ եւ կը քարոզէ Հայրապետական պատուիրակ Սերովբէ Եպիսկ. ՄԱՆՈՒԿԵԱՆ:

Յունուար 7, Չորեքշաբթի, Բ. օր Ս. Ծննդեան, յիշատակ Մեռելոց Ս. պատա-րագ ժամը տասնին:

×

### ՇԱՒԻԼ

5 Յունուար, Բշ.— Խթում, ժամը 15·30ին:

6 Յունուար, Գշ.— Ս. Ծնունդ, սկիզբ ժամը 8·30ին, Ս. պատարագ 10ին:

Երգեցողութիւնները կը ղեկավարէ ե-րաժշտապետ Պ. Ն. Սերգոյեան:

×

### ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

5 Յունուար Երկուշաբթի, Ճրագալոյց Ծննդեան, սկիզբ երեկոյեան արարողու-թեանց ժամը 3·30ին, Ս. պատարագ եւ Նախատօնակ 4·30ին:

6 Յունուար Երեքշաբթի, Ծնունդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, ըս-կիզբ առաւօտեան արարողութեանց ժամը 7·30ին, Հանդիսաւոր Ս. պատարագ ժա-մը տասնին:

7 Յունուար, Չորեքշաբթի, Յիշատակ Մեռելոց, սկիզբ առաւօտեան ժամեր-գութեանց ժամը 8·30ին, Հանդիսաւոր Ս. պատարգ ժամը տասնին, Հոգեհանգիստ ընդհ. ննջեցելոց ժամը 11·45ին:

## ՆՈՒԷՐ

Յ. Կ. Խաչի Պանեէօյի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է Տիկին Մաննեա Կարապետեանէ 1500 ֆրանք, Պանեէօ, իր Թոռնիկին Վարդերէսի ծը-նունդի ուրախ առիթով:

## ՎԱՐՁՈՒ ՍԵՆԵԱԿ ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայ ուսանող մը սենեակ կը փնտռէ հայ ընտանիքի մը մօտ: Դիմել գրատուն Հը-րանտ Սամուէլեան, 51 Րիւ Մօսիւէ լը Փրէնս, Փարիզ (6): Հեռ. Տանթօն 88–65:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Յ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը Մանուկներու օրը կը տօնէ Յունուար 11-ին, Ահարոնեան ակումբին մէջ:

Գեղարուեստական բաժին գպրոցի ա-շակերտներուն կողմէ:

Կը հրաւիրուին ծնողքները եւ բարե-կամներ:

Մուտքը ազատ է:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Յ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը Փա-րիզի շրջանի տասը մասնաճիւղերով կը տօնէ Կապոյտ Խաչի օրը, 12 Ապրիլին, Սորպոնի մեծ ամփիթատրոնին մէջ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Պ. Պօղոս Ղարիպեան (որ մեկնած է Փարիզէն) կը խնդրէ հետեւեալներէն ի-րենց հասցէն հաղորդել.—

**Sarkis Yovanovitchի**
Penzioner Presevo
Serbia, Yougoslavie

Ղազմըղարացի Խնկօ Ճելատեան (Պուէ-նոս – Այրէս), Ղանթարացի Պօղոս Ճը-տըխեան (Պուէնոս Այրէս) 1923ին Պէյ-րութէն Հարաւային Ամերիկա մեկնած են:

Ղազմղարացի Համբարձում Ենովքեան (լուսանկարիչ, Մարսէյլ):



Imprimé sur les presses du journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

մասին խորհրդային առաջարկները եւ աւելցուցած է .— Միկոյեան լուծում մը կը փնտռէ :

× Իտալական մամուլը ընդհանրապէս մեծ բան չի սպասեր Միկոյեանի այցելութենէն բայց թերթերը մեծ վստահութիւն կը յայտնեն Ամերիկայի հանդէպ : Հարաւային Եւրոպայի կարեւորագոյն օրաթերթերէն Միլանոյի «Իլ Նուօվօ Քօրիէռէ Տէլլա Սերա»ն կը գրէ թէ Եւրոպացիները քիչ մը մտահոգ են Ամերիկայի եւ Խ. Միութեան բանակցութիւններէն որոնց ընթացքին կրնան զոհուիլ եւրոպական շահերը, բայց նման վախեր աւելորդ են, կ'աւելցնէ նոյն թերթը :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ալթուն Մուրատեան եւ զաւակները, Լեւոն եւ Նշան իրենց սիրեցեալ ամուսնոյն եւ հօր հանգուցեալ Կարապետ Մուրատեանի տխուր մահուան առթիւ շնորհակալութիւն կը յայտնեն Հ. Յ. Դ. Անի կոմիտէին, Բազմաչէնի Հայր. Միութեան եւ բոլոր անոնց որոնք հեռագրով, նամակով եւ անձամբ իրենց ցաւակցութիւնը յայտնեցին եւ վշտակից եղան իրենց սուգին :

Նոյն առթիւ հինգ հազար ֆրանք կը նուիրեն Փարիզի Հայ Մշակոյթի տան Շ. Միսաքեան սրահին, երկու հազար ֆրանք Բազմաչէնի Հայր. Միութեան (Վիէն), երկու հազար ֆր. Վիէնի Կապոյտ Խաչի գպրոցներուն եւ հազար. ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Մաքրուհի Պօյաճեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Ճելոյեան եւ Քիլարճեան ընտանիքները կուգան ծանուցանել թէ այս Կիրակի Լիոնի եկեղեցիին մէջ (Րիւ Պուալօ 295) հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրելի ամուսնոյն, հօր, աներհօր եւ ազգականին՝ Պապուշ Պօյաճեանի մահուան տարելիցին առթիւ :

Իր յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

.................................................................

Օր. ՎԵՐԺԻՆ ՍԱՐԳԻՍԵԱՆ

Եւ

Պ. ՊԵՐՃ ՊԷՐՊԷՐԵԱՆ

Նշանուած

Գրիւնէլ — Փարիզ

1 Յունուար, 1959

.................................................................

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

### ԿԱՂԱՆԴԻ ԱՌԹԻՒ

Մարսէյլէն Պ. Սարգիս Խաչիկեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ, իր հայրենակից Թ. Նազաչեանի, Առնուվիլ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Հ. Յ. Դ. ԱՆԻ կոմիտէի ընկերները հանգուցեալ ընկեր Կարապետ Մուրատեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի կը նուիրեն 11.000 ֆրանք Մշակոյթի տան : Նոյն առթիւ ընկեր Պ. Մանուկեան (Կրընոպլէն) երկու հազար ֆր. Շասէն ընկեր Սարգիս Թորոսեան հազար ֆրանք, Վիէնէն Տէր եւ Տիկին Յ. Ուզունեան եւ զաւակունք հազար ֆրանք :

ՎՐԻՊԱԿ.— Չորեքշաբթի օրուան «Յառաջ»ի մէջ, Բ. էջ Պ. Հայկ Թօփաքեանի յօդուածին մէջ Բ. սիւնակ, Գ. տող «եւ քաղաքապետներու...» կարդալ՝ քաղաքացիներու :

## ՏՕՆԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

ՎԱԼԱՆՍ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի տօնական օրերու խնջոյքը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, «Ահարոնեան» ակումբին մէջ:

Հայր Պապեան մաղական լապտերով պիտի ցուցադրէ «Անուշ»ի թատերգութեան ֆիլմը: Նոյն ատեն տեղի պիտի ունենայ ծախուած քարգերու վիճակահանութիւնը :

Այս առթիւ սիրով կը հրաւիրուին Վալանսի հայ հասարակութիւնը, քաջալերելու այս բարենպատակ ձեռնարկը :

Սրահի ջերմութիւնը ապահովուած է :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

10 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, առաւօտ, ժամերգ. ժամը 8.30, երեկ. ժամերգ. եւ Ս. պատարագ երկսեռ խումբով, ժամը 4.30:

11 Յունուար, Կիրակի, Ս. ԾՆՈՒՆԴ, Ս. պատարագ, բազմաձայն երկսեռ խումբով, Ջրօրհնէք, հոգեհանգիստ Մեռելոցի, ժամը 8 – 12:

× Էջմիածինէն ստացուած է Վազգէն Ա. Հայրապետ Հայոց պատկերազարդ ստուար հատորը: Դիմել եկեղեցի :

×

### ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

11 Յունուար, Կիրակի,— Զ. օր Ծնընդեան, սկիզբ առաւօտուն արարողութեանց ժամը 8.30ին, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասին, Ջրօրհնէքի դաշն արարողութիւնք ժամը 11.30ին, Ով զարմանալին պիտի երգուի երկսեռ խումբով:

13 Յունուար, Երեքշաբթի.— Ութօրէք Ծննդեան, արարողութիւնք առաւօտեան ժամը 8.30ին, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը 10ին:

18 Յունուար, Կիրակի.— Բարեկենդան Ս. Սարգիսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8.30ին, հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգիստ, բատ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպագճեանի որոշ կտակին :

×

Սէնթ Անթուանի Ս Թադէոս եկեղեցւոյ Ս. Ծննդեան տօներու առթիւ.—

Շաբաթ, Ճրագալոյց երեկոյեան ժամերգութիւն ժամը հինգին : Ս. պատարագ ժամը վեցին :

Կիրակի, Ս. Ծնունդ, առաւօտեան ժամը 7.30ին, Ս. պատարագ տասնին, քարոզ 11ին, Ջրօրհնէք եւ հոգեհանգիստ համայն ննջեցելոց 11.30ին:

Երգեցողութիւնք կը կատարուին Ս. Եկեղեցւոյս երկսեռ գպրաց դասու կողմէ, ընկերակցութեամբ երգեհոնի եւ ղեկավարութեամբ Օր. Սիւզան Պօյաճեանի :

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ իրիկուն, Քաֆէ Լիոնի վերնայարկը: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փօթօրիկ» խումբի ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

ԹՈՔԱՏԻ Հայր. Միութեան ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, (33 Պուլվ. Բօտէն, Իսի):

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը Մանուկներու օրը կը տօնէ Յունուար 11ին, Ահարոնեան ակումբին մէջ :

Գեղարուեստական բաժին գպրոցի աշակերտներուն կողմէ:

Կը հրաւիրուին ծնողքները եւ բարեկամներ :

Մուտքը ազատ է :

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ «ՕՐ»Ը ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի :

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, «Սոխուտիօ Քոէքի» սրահը, 24 Րիւ Տինուար :

Գեղարուեստական ճոխ յայտագիր :

Կը մասնակցի Հայկազեան վարժարանի աշակերտութիւնը :

Երգեր, արտասանութիւններ եւ «Անոյշ»ի տեսարանէն պատկեր մը :

Ջանազան պարեր եւ հունգարական պար մը, նաեւ երգախառն կենդանի պատկեր մը «Մայր Հայաստան»

Կը խօսի Ընկերուհի Ա. Սիսլեան (Կրընոպլէն) :

Հայկական Կաղանդ պապան նոր տարուան առթիւ նուէրներ պիտի բաժնէ, ներկայ եղող բոլոր փոքրիկներուն :

Մուտքը ազատ է :





### ՆՈՒԷՐ

ՆԻՍԷՆ Պ. Առաքել Ատալեան երկու հազար ֆրանք կը նուիրէ Մշակոյթի տան, 2500 ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման, Տիկին Էօլմէզեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի: Ստանալ «Յառաջ»էն:





Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue. 17 — PARIS (9e)

[redacted]

Տէր եւ Տիկին Տիգրան Կիւլպէնկեան, Տէր եւ Տիկին Տօքթ. Գառնիկ Կիւլպէնկեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Արմենակ Աճէմեան ինչպէս նաեւ Կիմխաչեան, Կիւլպէնկեան, Աճէմեան, Ճիլաճեան, Ունճեան, Զիթունի, Շիմշիրեան (Ամերիկա), Գալանճեան եւ Զիլինկիրեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց զաւկին, թոռան եւ ազգականին փոքրիկին՝

ՊԱՏՐԻԿ – ՊՐԻՒՆՕ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆԻ

(11 ամսու)

ցաւագին մահը որ տեղի ունեցաւ Յունուար 7ին:

Յուղարկաւորութիւնը այսօր, Շաբաթ ժամը 14·30ին, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս նկատել իբրեւ այդ:

[redacted]

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

10 Յունուար, Շաբաթ, Ճրագալոյց, առաւօտ, ժամերգ. ժամը 8·30, երեկ. ժամերգ. եւ Ս. պատարագ երկսեռ խումբով, ժամը 4·30:

11 Յունուար, Կիրակի, Ս. ԾՆՈՒՆԴ, Ս. պատարագ, բազմաձայն երկսեռ խումբով, Ջրօրհնէք, հոգեհանգիստ Մեռելոցի, ժամը 8 – 12:

× Էջմիածինէն ստացուած է Վազգէն Ա. Հայրապետ Հայոց պատկերազարդ ստուար հատորը: Դիմել եկեղեցի:

×

### ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

11 Յունուար, Կիրակի,— Զ. օր Ծննդեան, սկիզբ առաւօտուն արարողութեանց ժամը 8·30ին, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը տասին, Ջրօրհնէքի գաշն արարողութիւնք ժամը 11·30ին, Ով զարմանալին պիտի երգուի երկսեռ խումբով:

13 Յունուար, Երեքշաբթի.— Ութօրէք Ծննդեան, արարողութիւնք առաւօտեան ժամը 8·30ին, հանդիսաւոր Ս. պատարագ ժամը 10ին:

18 Յունուար, Կիրակի.— Բարեկենդան Ս. Սարգիսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8·30ին, հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգիստ, ըստ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպագճեանի ուխտին:

×

Սէնթ Անթուանի Ս. Թադէոս եկեղեցւոյ Ս. Ծննդեան տօներու առթիւ.—

Շաբաթ, Ճրագալոյց երեկոյեան ժամերգութիւն ժամը հինգին: Ս. պատարագ ժամը վեցին:

Կիրակի, Ս. Ծնունդ, առաւօտեան ժամը 7·30ին, Ս. պատարագ տասնին, քարոզ 11ին, Ջրօրհնէք եւ հոգեհանգիստ համայն ննջեցելոց 11·30ին:

Երգեցողութիւնք կը կատարուին Ս. եկեղեցւոյս երկսեռ դպրաց դասու կողմէ, ընկերակցութեամբ երգեհոնի եւ ղեկավարութեամբ Օր. Սիւզան Պօյաճեանի:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի առտու ժամը 10·45ին: Կը խօսի պատուելի ՍԻՍԼԵԱՆ: Նիւթ՝ Ամէն բանին համար ժամանակ կայ:

## «ՀԱՅ-ԲՈՅԺ»Ի ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

### ՇԱՏ ԿԱՐԵՒՈՐ

ՀԱՅ – ԲՈՅԺի վերջին թիւին կողքին վրայ, տպագրութեան ժամանակ, ինկած են ԱՅՎԱԶԵԱՆ անուան երկու առաջին գիրերը, եւ բաժանորդները կը գրկուին ՎԱԶԵԱՆ անուան, ինչ որ կը դժուարացնէ ղանձումը: Շատ կը խնդրենք բաժանորդներէն, որ ՀԱՅ – ԲՈՅԺի բաժնեգինները գրկեն ճիշդ այսպէս, այս ուղղագրութեամբ.—

**Ch. Aïvazian**

աւելցնել Բէտաքսիոն ՅԱՌԱՋ, 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9): Շէնքին գանազան բաժանումներուն պատճառով, անհրաժեշտ է գրել՝ Յառաջի խմբագրութիւն (ֆրանսերէն):

ՄԱՄՈՒԼԻ տակ է եւ լոյս կը տեսնէ Հայ – Բոյժի Նոյեմբեր – Դեկտեմբեր թիւը:

ԲԱՅԱՌԻԿԸ, 112 էջ, լոյս տեսած է եւ պիտի ղրկուի զայն չարթուընէ սկսեալ՝ բոլոր անոնց որ վճարած են իրենց բաժնեգինը, յաւելեալ 300 ֆրանք:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Նոր Տարուան առթիւ Պ. Գրիգոր Մէրճանօֆ կը նուիրէ երեսուն հազար ֆրանք ի նպաստ Հայ Կարմիր Խաչի բարենպատակ ձեռնարկներուն:




Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)


### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ «ՕՐ»Ը ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղի:

Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, «Սալւափօ Բոլէքի» սրահը, 24 Րիւ Տիւնուար:

Գեղարուեստական ճոխ յայտագիր:

Կը մասնակցի Հայկազեան վարժարանի աշակերտութիւնը:

Երգեր, արտասանութիւններ եւ «Անոյշ»ի տեսարանէն պատկեր մը:

Ջանազան պարեր եւ հունգարական պար մը, նաեւ երգախառն կենդանի պատկեր մը «Մայր Հայաստան»:

Կը խօսի Ընկերուհի Ա. Սիսլեան (Կրընոպլէն):

Հայկական Կաղանդ պապան նոր տարուան առթիւ նուէրներ պիտի բաժնէ, ներկայ եղող բոլոր փոքրիկներուն:

Մուտքը ազատ է:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ի Լիոնի մասնաճիւղին տարեկան մեծ պարահանդէսը Փետրուար 21ին, Շաբաթ երեկոյեան ժամը իննէն մինչեւ լոյս, «Պէոլէ Մէյէ»ի շքեղ սրահին մէջ:

×

«Փետրուար 18»ը կը տօնուի Փարիզի մէջ Փետրուար քսանին, Ուրբաթ երեկոյեան ժամը իննին:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՓԱՐԻԶԻ Ս. ՅՈՎՀ. ՄԿՐՏԻՉ ԵԿԵՂԵՑԻՈՅ

ԿԵԴՐ. ԿՐԹ. մարմինը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները դպրոցներու համար:

Տէր եւ Տիկին Յովհաննէս Պօղոսեան հազար ֆրանք, Տիկին Ժանէթ Զաքրեան երկու հազար, Պ. Ժօաննէսեան (Նրվէռ) երկու հազար ֆրանք:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընդհ. ժողովը, այս Շաբաթ իրիկուն, Քաֆէ Լիոնի վերնայարկը: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին:

ԹՈՔՍԱՏԻ Հայր. Միութեան ժողովը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, (33 Պուլվ. Բօռէն, Իսի):

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղը Մանուկներու օրը կը տօնէ Յունուար 11ին, Ահարոնեան ակումբին մէջ:

Գեղարուեստական բաժին դպրոցի աշակերտներուն կողմէ:

Կը հրաւիրուին ծնողքները եւ բարեկամներ:

Մուտքը ազատ է:

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

### ՏՕՆԱԿԱՆ ԽՆՋՈՅՔ

ՎԱԼԱՆՍ.— Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի տօնական օրերու խնջոյքը այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 2·30ին, «Ահարոնեան» ակումբին մէջ:

Հայր Պապեան մոզական լապտերով պիտի ցուցադրէ «Անուշ»ի թատերգութեան ֆիլմը: Նոյն առեն տեղի պիտի ունենայ ծախուած քարդերու վիճակահանութիւնը:

Այս առթիւ սիրով կը հրաւիրուին Վալանսի հայ հասարակութիւնը, քաջալերելու այս բարենպատակ ձեռնարկը:

Սրահի ջերմութիւնը ապահովուած է:

Պ. Քեվրապաշեան Սանփան, Տէր եւ Տիկին Սամուէլեան, Պ. Կարապետ Ոսկանեան (Պոլիս), ինչպէս նաեւ բոլոր ազգականները խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, քրոջ եւ քերկինին՝

ԱՅՐԻ ՏԻԿ. ՄԱՐԻԱՄ ՔԵՎՐԱՊԱՇԵԱՆԻ
(Ծնեալ Ոսկանեան)

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Չորեքշաբթի 8 Յունուար, Բօշէնի հիւանդանոցին մէջ։

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի Երկուշաբթի 12 Յունուար, Փարիզի Հայոց եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Թիէի գերեզմանատունը։

Մասնաւոր մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Տիգրանուհի Սապոնճեան, Տէր եւ Տիկին Սարգիս Սապոնճեան եւ զաւակը, Տէր եւ Տիկին Շաւարշ Գալենտէրեան եւ զաւակները, իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց, որոնք իրենց ներկայութեամբ, ծաղկեպսակով, հեռագրով ու նուիրատուութիւններով մասնակցեցան իրենց սուգին, իրենց ամուսնոյն ու հօր Յարութիւն Սապոնճեանի կսկծալի մահուան առթիւ։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Ողբ. Լեւոն Մոզեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի, Հայ Կարմիր Խաչի Ֆէօանվիլժէի օղափոխութեան կայանին կը նուիրեն. Պ. Պ. Ժիրայր Ժամկոչեան (Անգլիա), Վահրամ Ժամկոչեան (Անգլիա) հազարական ֆրանք։

## ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբի հաւաքոյթը այս երեքշաբթի կէսօրէ վերջ ժամը 8·30ին, Ազգային Տան մէջ, 32 րիւ տը Թրէվիզ։

Ունկնդրութիւն՝ երգչախումբի վերջին համերգին որ արձանագրուած է ժապաւէնի վրայ։

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Ելեկտրականութեան, տուրքերու, թղթատարի եւ առաքման ծախքերու յաւելումը մեծ դժուարութիւններ ստեղծեց թերթիս վարչութեան համար որ կը փորձէ սակայն պահել բաժանորդագրական նոյն պայմանները։ Մեր այս զոհողութիւնը անկարելի կը դառնայ, եթէ բաժանորդները իրենց կարգին ԿԱՆԽԻԿ եւ ԿԱՆՈՆԱՒՈՐ չվճարեն իրենց բաժնեգինները։

Եթէ կ'ուզէք որ պահենք մեր գիները, նկատառակ ստեղծուած պայմաններուն՝ ԱՊԱՌԻԿ ԹԵՐԹ ՄԻ ԿԱՐԴԱՔ ԵՒ ՓՈԽ ՄԻ ՏԱՔ ՁԵՐ ԹԵՐԹԸ։

Արտասահմանի բաժնեգին՝ տարեկան 4500 ֆրանք։

Կանխայայտ շնորհակալութիւններ։

*ՎԱՐՉՈՒԹԻՒՆ*

## ՈՉ-ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ ՍԱԿ ՅՈՒՆՈՒԱՐ 1-ԷՆ Ի ՎԵՐ

| | |
|---|---|
| Մահազդ | 2500 |
| Շնորհակալիք | 1500 |
| Հոգեհանգիստ (1 անգամ) | 1500 |
| Հարսանիքի, ծնունդի, նշանախօսութեան յայտարարութիւն | 2000 |

Այս գիներուն վրայ՝ հարիւրէն քսան զեղչ՝ մեր բաժանորդներուն։

Առեւտրական յայտարարութեանց համար մասնաւոր պայմաններ։ Դիմել վարչութեան։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մուրատ – Ռափայէլեան Նախկին Սանուց Միութեան հանդէսը 15 Փետրուար, Կիրակի, Միւթիւալիթէի սրահին մէջ։

### ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Նոր Տարուան առթիւ Հայ Կարմիր Խաչի Ֆէօանվիլիէի օղափոխութեան կայանին ընդարձակման ի նպաստ կը նուիրեն. — Փոքրիկներ Արուսեակ եւ Վարուժան Լօրէնեաններ (Տրակինեանէն) հինգ հազար ֆրանք, Պ. Գէորգեան հինգ հազար, Տիկին Խորասանճեան երկու հազար, Տիկ. Վ. Նուպար, Պ. Մ. Թիւթիւնճեան երեք հազարական, Տէր եւ Տիկին Զ. Ալեքսանեան 1500, Պ. Ա. Մենծիկեան (Մարսէյլ), Օր. Ս. Արապեան հազարական։

## "ՀԱՅ-ԲՈՅԺ"Ի ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

### ՇԱՏ ԿԱՐԵՒՈՐ

ՀԱՅ – ԲՈՅԺի վերջին թիւին կողքին վրայ, տպագրութեան ժամանակ, ինկած են ԱՅՎԱԶԵԱՆ անուան երկու առաջին գիրերը, եւ բաժնեգինները կը ղրկուին ՎԱԶԵԱՆ անուան, ինչ որ կը դժուարացնէ գանձումը։ Շատ կը խնդրենք բաժանորդներէն, որ ՀԱՅ – ԲՈՅԺի բաժնեգինները ղրկեն ճիշտ այսպէս, այս ուղղագրութեամբ.—

**Ch. Aïvazian**

աւելցնել Րէտաքսիոն ՅԱՌԱՋ, 32 Րիւ տը Թրէվիզ, Փարիզ (9)։ Շէնքին գանազան բաժանումներուն պատճառով, անհրաժեշտ է գրել՝ Յառաջի խմբագրութիւն (ֆրանսերէն)։

ՄԱՄՈՒԼԻ տակ է եւ լոյս կը տեսնէ Հայ –Բոյժի Նոյեմբեր – Դեկտեմբեր թիւը։

ԲԱՑԱՌԻԿԸ, 112 էջ, լոյս տեսած է եւ պիտի ղրկուի գալ շաբթուընէ սկսեալ՝ բոլոր անոնց որ վճարած են իրենց բաժնեգինը, յաւելեալ 300 ֆրանք։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. «Նոր Սերունդի» Լիոնի մասնաճիւղին տարեկան մեծ պարահանդէսը Փետրուար 21ին, Շաբաթ երեկոյեան ժամը իննէն մինչեւ լոյս, «Պէոփէ Մէյէ»ի շքեղ սրահին մէջ։

×

«Փետրուար 18»ը կը տօնուի Փարիզի մէջ Փետրուար քսանին, Ուրբաթ երեկոյեան ժամը իննին։

### ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

18 Յունուար, Կիրակի.— Բարեկենդան Ս. Սարգիսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8·30ին, հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգիստ, ըստ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպագեանի որոշ կտակին։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ուս. Միութեան ժողովը այսօր Կիրակի ժամը երեքին, 17 Րիւ Պլէօ։

### ԱՆՈՒԱՆԱԿՈՉՈՒԹԵԱՆ ՏՕՆԻՆ

Առթիւ Յունուար 13, Երեքշաբթի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ Ս. պատարագ։ Յետ պատարագի Տան Օրհնէքի արարողութիւն եկեղեցւոյ խորհրդարանին մէջ։












Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

րերը : Ընդհանուր տպաւորութիւնն այն է, թէ բրիտանական կառավարութիւնը ոչ Վարշաւան եւ ոչ ալ Փրակն պիտի ընդունի իբրեւ հաւաքավայր :

Արեւմտեան Գերմանիոյ մայրաքաղաքին մէջ անակնկալ մը եղաւ խորհրդային նոր յուշագիրը : Մոսկուայի առաջարկները յուսախաբութիւն պատճառեցին Գերմանիոյ քաղաքական շրջանակներուն, որոնք վճռած են տեղի չտալ :

Արեւելեան Գերմանիա դիւրահաճութեամբ դիմաւորեց Մոսկուայի յուշագիրը եւ Պոնի կառավարութեան առաջարկեց խորհրդակցիլ, իբրեւ ժողովի նախապատրաստական աշխատանք, գերման ժողովուրդը հրաւիրելով որ ընդունի Խ. Միութեան ծրագիրը :

Ֆրանսայի Արտաքին նախարար Քուվ տը Միւրվիլ շեշտեց նաեւ թէ Ֆրանսայի արտաքին քաղաքականութիւնը կը կայանայ տնտեսական եւ քաղաքական մարզերուն մէջ Արեւմտեան Եւրոպայի երկիրներուն հետ սերտ գործակցութեան մէջ, աւելցուց.— «Պերլինի խնդիր գոյութիւն չունի. մէկ հարց կայ միայն՝ Գերմանիա»: Այնուհետեւ, Արտաքին նախարարը բսաւ.— «Ֆրանսա իր դաշնակիցներուն նման պատրաստ է գերմանական հարցը քննելու, պայմանաւ որ ո՛չ մէկ նախապայման դրուի այս ուղղութեամբ»:

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տէր եւ Տիկին Սանփան Տամլամեան երկու հազար ֆրանք կը նուիրեն եկեղեցւոյ կրթական նպատակներուն, ողբացեալ Լեւոն Մօղեանի յիշատակին :
(Ստանալ «Յառաջ»էն) :

## ՆՈՒԷՐ

Տիկին Արշալոյս Հ. Սարգիսեան Հ. Սարգիսեան եւ ընտանիքը փոքրիկն Պատիկ – Պրինո Կիւլպէնկեանի կսկծալի մահուան առթիւ եւ անոր յիշատակին երեք հազար ֆրանք կը նուիրեն Ազգատախնամին :
(Ստանալ «Յառաջ»էն) :

## ՆՈՒԷՐՆԵՐ ԱՂՔԱՏԱԽՆԱՄԻՆ

Փարիզի Աղքատախնամը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները՝ դանազան առիթներով.— Պ. Պալըճեան Գէորգ 25.000 ֆրանք, (հանգուցեան տուներու համար մատաղի փոխարժէք), Պ. Մերճանօֆ 30.000 ֆր., Այրի Տիկին Ժանէթ Զագրեան (Ալժէէն) իր ողբացեալ ամուսնոյն՝ Հրանդ Զագրեանի մահուան Ա. տարելիցին առթիւ 2000 ֆրանք Աղքատախնամին, տասը հազար ծերանոցներուն : Պ. Պ. Սիմոնեան Բարսեղ հազար, Մուրատեան Կ. 500, Ինճէեան Յակոբ հինգ հարիւր ֆրանք :

## ԱՆՈՒԱՆԱԿՈՉՈՒԹԵԱՆ ՏՕՆԻՆ

Առթիւ Յունուար 13, Երեքշաբթի առաւօտ, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ Ս. պատարագ : Յետ պատարագի Տուն Օրհնէքի արարողութիւն եկեղեցւոյ խորհրդարանին մէջ :

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի հերթական դասախօսութիւնը այս Չորեքշաբթի ժամը իննին, Քաֆէ Քատէի սրահը : Կը խօսի Պ. Բ. Նազարեան (շրջանաւարտ քաղաքական գիտութեանց) : Նիւթ ունենալով Խ. Հայաստանի տնտեսութիւնը մեր օրերուն, ըստ Մոսկուայի վերջին տեղեկագրութեան :
Կը խնդրուի ճշդապահութիւն : Մուտքը ազատ է :

## ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

18 Յունուար, Կիրակի.— Բարեկենդան Ս. Սարգիսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8.30ին, հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգիստ, ըստ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպագճեանի որոշ կտակին :



## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Ելեկտրականութեան, տուրքերու, թղթատարի եւ առաքման ծախքերու յաւելումը մեծ դժուարութիւններ ստեղծեց թերթիս վարչութեան համար որ կը փորձէ սակայն պահել բաժանորդագրական նոյն պայմանները: Մեր այս զոհողութիւնը անկարելի կը դառնայ, եթէ բաժանորդները իրենց կարգին ԿԱՆԽԻԿ ԵՒ ԿԱՆՈՆԱՒՈՐ չվճարեն իրենց բաժնեգինները :

Եթէ կ'ուզէք որ պահենք մեր գինը, հակառակ ստեղծուած պայմաններուն՝ ԱՊԱՌԻԿ ԹԵՐԹ ՄԻ ԿԱՐԴԱՔ ԵՒ ՓՈԽ ՄԻ ՏԱՔ ՁԵՐ ԹԵՐԹԸ :

Արտասահմանի բաժնեգին՝ տարեկան 4500 ֆրանք :

Կանխայայտ շնորհակալութիւններ :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՈՉ-ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ ՍԱԿ ՅՈՒՆՈՒԱՐ 1-ԷՆ Ի ՎԵՐ

| | |
|---|---|
| Մահազդ | 2500 |
| Շնորհակալիք | 1500 |
| Հոգեհանգիստ (1 անգամ) | 1500 |
| Հարսանիքի, ծնունդի, նշանախօսութեան յայտարարութիւն | 2000 |

Այս գիներուն վրայ՝ հարիւրէն քսան զեղչ՝ մեր բաժանորդներուն :

Առեւտրական յայտարարութեանց համար մասնաւոր պայմաններ : Դիմել վարչութեան :

## ՏՕՆԱԾԱՌ – ՀԱՆԴԷՍ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղին՝ «Մանուկներու Օր»ը կը տօնուի մեծ պատրաստութեամբ եւ գեղարուեստական ճոխ յայտագրով, այս Կիրակի ժամը 15ին, Րիւ Ժէի սրահին մէջ:

Դպրոցի բոլոր աշակերտները բեմին վրայ իրենց խմբական երգերով, պարերով եւ արտասանութիւններով : Կը ներկայացուի Յիսուսի Ծնունդը, երգախառն գեղեցիկ պատկերներով :

Սիրով կը հրաւիրուին գաղութիս բոլոր երախաներն անխտիր եւ ազգապահպանման գործին բծախնդիր հայրենակիցները : Կաղանդ Պապան նուէր կը բաժնէ ներկայ բոլոր պզտիկներուն :

Ճոխ պիւֆէ՝ պատրաստուած Խաչուհիներու կողմէ :



Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

## ՄԱՐՍԷՅԼ ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Հինգշաբթի ութ Յունուար, Մարսէյլ Րիւ տը Ռոմի փոստէն թերթիս ղրկուած 3500 ֆրանք բաժնեգինին տէրը իր անունը եւ հասցէն անպայման իմացնէ փութով : Մանդա – չէքին թալոնին վրայ փոխանակ իր անունին, թերթին անունը եւ հասցէն գրած է :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. «Նոր Սերունդ»ի Լիոնի մասնաճիւղին տարեկան մեծ պարահանդէսը փետրուար 21ին, Շաբաթ երեկոյեան ժամը իննէն մինչեւ լոյս, «Պէօրէ Մէյէ»ի շքեղ սրահին մէջ:

×

«Փետրուար 18»ը կը տօնուի Փարիզի մէջ Փետրուար քսանին, Ուրբաթ երեկոյեան ժամը իննին:

×

Նոր Սերունդի օրը Պանեէօի մէջ, Մարտ մէկին եւ տարեկան մեծ պարահանդէսը Մայիս 9ին, Եըղ քաղաքապետարանի սրահին մէջ :

Օր. ԷԹԻԼ ԵՈՐՆԵԱՆ
եւ
Պ. ԹԱԳՒՈՐ ՊԱՐԹԱՆԼԵԱՆ
Նշանուած
11 Յունուար, 1959
Շուազի – լը – Ռուա Փարիզ

## ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբի հաւաքոյթը այս երեքշաբթի կէսօրէ վերջ ժամը 8.30ին, Ազգային Տան մէջ, 32 րիւ տը Թրէվիզ :
Ունկնդրութիւն՝ երգչախումբի վերջին համերգին որ արձանագրուած է ժապաւէնի վրայ :

## 1959 ՄԻՈՒԹԵԱՆ ՇԱԲԱԹ

Կիրակի Յունուար 18, ժամը 16ին Նոթր Տամ տը Լորէթի եկեղեցիին մէջ նախագահութեամբ Պ. Րիւէի (Փարիզի երեսփոխան) :

ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՒ ԻՐ ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆԸ ԽԱՉԻՆ

Փիէր Ռօնտօ (արեւելագէտ – գրագէտ) եւ Փօլ Պերրթրան տը լա Կրասիէր :
Գունաւոր ժապաւէններ (փաստանկար)

ՄԱՐՍԷՅԼ
ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ
Կը ծանուցանէ թէ տարեկան իր
ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
Տեղի պիտի ունենայ
31 Յունուար, Շաբաթ գիշեր,
Քլիւպի մէջ

ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ (ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ)
ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
փետրուար 1, կիրակի, ժամը 15 – 24
LES AMBASSADEURS
3 Avenue Gabriel, Champs-Elysées
Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր
PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLÉANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS
Գեղարուեստական ճոխ բաժին
Մուտք 500 ֆրանք
Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին Էլիզէ 67 – 03 :
ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19ուկէսին : Հակառակ պարագային պարահանդէսին կազմակերպիչ Յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ :

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Ալֆորվիլի Կապոյտ Խաչի մասնաճիւղը ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհի Ֆլորա Այվաջեանի իր հօր մահուան առթիւ եւ այս տխուր առթիւ երեք հազար ֆրանք կը նուիրէ տեղւոյն աղքատներուն :

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Տէֆոնդրնել եւ զաւակները, Տէր եւ Տիկին Տէմրիչեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Կիւլպէնկեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս կիրակի առտու հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Հայոց եկեղեցին իրենց ողբացեալ ծնողքին Հայկանոյշ եւ Միհրան Ողուրլեաններու յիշատակին :

Կը հրաւիրուին անոնց յիշատակը յարգողները :

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Տիկին Սաթենիկ Խաչատուրեան կը նուիրէ հինգ հազար ֆրանք, ի նպաստ Հայ Կարմիր Խաչի բարենպատակ ձեռնարկներուն, փոխան ծաղկեպսակի, փոքրիկ Պատրիկ Կիւլպէնկեանի տխուր մահուան առթիւ :

Տիկին Ժանէթ Զաքրեան իր ողբ. ամուսնոյն հոգեհանգստեան առթիւ, կը նուիրէ 1500 Ֆր., ի նպաստ Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլլէի օգափոխութեան կայանի ընդարձակման :

Պ. Հրանդ Պալեան (Վերսայլէն) իր ապաքինման առթիւ կը նուիրէ 2500 Ֆր., ի նպաստ Հայ Կարմիր Խաչի բարենպատակ ձեռնարկներուն :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Թագուհի Պետոյեան եւ բոլոր պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որ իրենց ներկայութեամբ, ծաղկեպսակով, նամակով մասնակցեցան իրենց սուգին, իրենց մօր՝ Այրի Տիկին Էլմաս Քէչիչեանի մահուան առթիւ :

### ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի առաւօտ ժամը 10ին, քառասնօրեայ պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցիին մէջ եւ յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի՝

ԱՌԱՔԵԼ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅԻ

մահուան 5րդ տարեդարձին առթիւ : Կը հրաւիրուի հասարակութիւնը :

### ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

18 Յունուար, Կիրակի.— Բարեկենդան Ս. Սարգիսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8.30ին, հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգիստ, ըստ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպագճեանի որոշ կտակին :



Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Ելեկտրականութեան, տուրքերու, թղթատարի եւ առաքման ծախքերու յաւելումը մեծ դժուարութիւններ ստեղծեց թերթիս վարչութեան համար որ կը փորձէ սակայն պահել բաժանորդագրական նոյն պայմանները: Մեր այս զոհողութիւնը անկարելի կը դառնայ, եթէ բաժանորդները իրենց կարգին ԿԱՆԽԻԿ ԵՒ ԿԱՆՈՆԱՒՈՐ չվճարեն իրենց բաժնեգինները :

Եթէ կ'ուզէք որ պահենք մեր գինը, հակառակ ստեղծուած պայմաններուն՝ ԱՊԱՌԻԿ ԹԵՐԹ ՄԻ ԿԱՐԴԱՔ ԵՒ ՓՈԽ ՄԻ ՏԱՔ ՁԵՐ ԹԵՐԹԸ :

Արտասահմանի բաժնեգին՝ տարեկան 4500 ֆրանք :

Կանխայայտ շնորհակալութիւններ :

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՈՉ-ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ ՍԱԿ ՅՈՒՆՈՒԱՐ 1-ԷՆ Ի ՎԵՐ

| | |
|---|---|
| Մահազդ | 2500 |
| Շնորհակալիք | 1500 |
| Հոգեհանգիստ (1 անգամ) | 1500 |
| Հարսանիքի, ծնունդի, նշանախօսութեան յայտարարութիւն | 2000 |

Այս գիներուն վրայ՝ հարիւրէն քսան զեղչ՝ մեր բաժանորդներուն :

Առեւտրական յայտարարութեանց համար մասնաւոր պայմաններ : Դիմել վարչութեան :

### ՏՕՆԱԾԱՌ – ՀԱՆԴԷՍ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղին՝ «Մանուկներու Օր»ը կը տօնուի մեծ պատրաստութեամբ եւ գեղարուեստական ճոխ յայտագրով, այս կիրակի ժամը 15ին, Րիւ Ժէի սրահին մէջ:

Դպրոցի բոլոր աշակերտները բեմին վրայ իրենց խմբական երգերով, պարերով եւ արտասանութիւններով: Կը ներկայացուի Յիսուսի Ծնունդը, երգախառն գեղեցիկ պատկերներով :

Սիրով կը հրաւիրուին գաղութիս բոլոր երախաներն անխտիր եւ ազգապահպանման գործին բծախնդիր հայրենակիցները: Կաղանդ Պապան նուէր կը բաժնէ ներկայ բոլոր պզտիկներուն :

Ճոխ պիւֆէ՝ պատրաստուած Խաչուհիներու կողմէ :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Սեդրակ Եավրուեանի դաշնակի ռեսիթալը յառաջիկայ Մարտ ամսին, Սալ Կավոյի մէջ :



### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կը տօնուի Տէսինի մէջ, նախաձեռնութեամբ՝ Ֆ. Կապոյտ Խաչի Տէսինի մասնաճիւղին եւ մասնակցութեամբ Ազգային դպրոցի ու կրթական մարմնին :

25 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք, ժամը երեքին, Հ. Յ. Դ. Տան սրահը :

Գեղարուեստական բաժին.— Արտասանութիւններ, երգեր եւ սիրուն անակնկալներ դպրոցին աշակերտներուն կողմէ, ղեկավարութեամբ ուսուցիչ Պ. Թրագոշի: Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր : Մուտքը ազատ է :

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Հ. Յ. Դ. «Նոր Սերունդի» Լիոնի մասնաճիւղին տարեկան մեծ պարահանդէսը Փետրուար 21ին, Շաբաթ երեկոյեան ժամը իննէն մինչեւ լոյս, «Պէսիէ Մէյէ»ի չքեղ սրահին մէջ:



## ՅՈՒՇԱՏԵՏՐ

—o—

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կոմիտէի ընկերական ընդհ. ժողովը այս Ուրբաթ, ժամը 20.30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ : Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է :

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ (Յունուար 17) ժամը 16ին, Քաֆէ Րեժան: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

ճարտարապետները, մանրապետները եւ որակաւոր արհեստապէտներ չունի՝ ճարտարարուեստի թէ երկրագործութեան մէջ: Պէտք է կարգի դնել այս բոլորը, չմոռանալով բարեփոխել կրթական մեթոտները:

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Ծրագիր մը պիտի կազմուի՝ յառաջիկայ տարուան պիւտճէին՝ իբրեւ խարխիս ծառայելու համար: Պիտի նուազի ուգղակի տուրքերու (էմփօ տիրէքթ) քանակը: Պետութիւնը պիտի օգնէ արդիւնաբերական եւ երկրագործական տնտեսութեան, գիներու նուազումի մը համար:

Վարչապետը իր ճառը վերջացուց, յայտարարելով թէ կառավարութիւնը Աստղին կառավարութիւնն է, որ բարենորոգումներ պիտի բերէ: Այնուհետեւ, բազմաթիւ երեսփոխաններ, նախապէս արձանագրուած, խօսք առին: Ասոնց կարգին Մարսէյլի երեսփոխան՝ ընկերվարական Ֆրանսիս Լէճառ որ ծանր յարձակումներ բրաւ, ելմտ. որոշումներու եւ Ռիւէֆի ծրագրին առթիւ, յայտնելով թէ ընկերվարականները դէմ պիտի քուէարկեն:

Խօսողներու կարգին, գիշերուան նիստին առաջին առթիւ եղաւ Ֆրէսինէ (անկախ). — Պէտք է զօրավիգ կանգնիլ կառավարութեան հակառակ իր տուած ոչ ժողովրդական որոշումներուն: Բայց գիտում կ'ընենք որ նախկին ռազմիկներուն թոշակը պահուի եւ ուրիշ տեղեր սեղմումներ ըլլան: Ֆրէսինէ խստօրէն քննադատեց պետական կարգ մը հաստատութիւնները գլխաւորաբար ելեկտրականութիւնը, ինչ որ պատճառ եղաւ Ե. Հանրապետութեան Ա. Ազգ. Ժողովի, Ա. նիստին առաջին միջամտութեան—«35.000 ֆրանք ամսական կ'առնեն» պոռաց համայնավար Կրընիէ: Լօրիօլ, Ալժերիոյ երեսփոխան, շեշտեց.— «Միակ կուիւ զոր Ֆրանսա չի կրնար կորսնցնել Ալժերիոյ կուին է: Լըժանտր (անկախ) բեմ կը բարձրանայ եւ սրամտութեամբ կը յարձակի վարչապետին վրայ.— Ժամանակին « Բարկութեան Սուրհանդակը » անունով թերթ մը կը հրատարակէիք որ վերջը «Աստղին Սուրհանդակը» կոչեցիք եւ որ, եթէ շարունակուի, «Սրտին Սուրհանդակը» պիտի կոչուի (քըքիջներ): Ապա Ռւադի անկախ երեսփոխանը յիշեց որ Տըպրէ յայտարարած էր թէ բացարձակապէս դէմ է Պէն Պէլլայի ազատագրման, ինչ որ Տըպրէի գործին չէ եկած եւ վարչապետը բառած է.— «Եթէ հոս մէկը կայ որ Դ. Հանրապետութիւնը կը յիշեցնէ ան ալ դուք էք», բայց Լը Ժանտր անմիջապէս ճշդած է թէ կառավարութեան մէջ իսկ Դ. Հանրապետութենէն շատ մարդ կայ:

Նիստը փակուած է կէս գիշերին, վերսկսած ուրբաթ ամբողջ օրը: Իրիկուան դէմ տեղի պիտի ունենար քուէարկութիւնը, կը կարծուի թէ Տըպրէ 400էն 450 ձայն ապահոված է արդէն:

## ՈՉ-ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆՑ ՍԱԿ ՅՈՒՆՈՒԱՐ 1-ԷՆ Ի ՎԵՐ

| | |
|---|---|
| Մահազդ | 2500 |
| Շնորհակալիք | 1500 |
| Հոգեհանգիստ (1 անգամ) | 1500 |
| Հարսանիքի, ծնունդի, նշանախօսութեան յայտարարութիւն | 2000 |

Այս գիներուն վրայ՝ հարիւրէն քսան զեղչ՝ մեր բաժանորդներուն:

Առեւտրական յայտարարութեանց համար մասնաւոր պայմաններ: Դիմել վարչութեան:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Շաւիլի եկեղեցւոյ հոգաբարձութիւնը կը տեղեկացնէ յարգոյ հասարակութեան թէ, յառաջիկայ Կիրակի յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Հայ Կարմիր Խաչի վաստակաւոր անդամուհի Օր. Զարուհի Գալֆայեանի մահուան 6րդ տարելիցին առթիւ: Եկեղեցւոյ գլխներէն Պ. Զաւէն Յովհաննէսեանի եւ Յակոբ Դաւիթեանի հանգուցեալ ծնողաց հոգւոց հանգստեան համար, ինչպէս նաեւ վաղամեռիկ Պ. Սարգիս Պետրոսեանի համար:

Օր. ՆՈՅԵՄԻ ՇՄԱՒՈՆԵԱՆ
Պ. ԱՐԱՄ ԼԱՌՈՍԵԱՆ
Նշանուած

Պոլիս 1959, Յունուար 11 Վիրօֆլէ

×

Այս ուրախ առթիւ Տէր եւ Տիկին Շմաւոնեան կը նուիրեն երեք հազար ֆր. Շաւիլի դպրոցին եւ երկու հազար ֆր. Կապ. Խաչին: Նոյնպէս Տէր եւ Տիկին Կարօ Նիկողոսեան կը նուիրեն հազար ֆրանք Շաւիլի Կապ. Խաչին:

*ԼՈՅՍ ՏԵՍԱՒ*

## ԵՐԳՆ ԱՄԵՐԻԿԱՅԻ

Գրեց՝ ՃՕՐՃ ՄԱՐՏԻԿԵԱՆ

Լաթակազմ, 433 էջ: Առաջին անգամ լոյս ընծայուած է անգլերէն լեզուով Նիւ Եորք:

ԳԻՆ 1000 ՖՐԱՆՔ

Դիմել Հրանտ–Սամուէլ, Պարսամեան գրատուններ եւ «Յառաջ»ին:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Մուրատ–Ռափայէլեան Նախկին Սանուց Միութեան հանդէսը 15 Փետրուար, Կիրակի, Միւթիւալիթէի սրահին մէջ:

×

Սեդրակ Եավրուեանի դաշնակի ռեսիթալը յառաջիկայ Մարտ ամսին, Սալ Կավոյի մէջ:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Երկուշաբթի, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

Ֆ. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի մասնաճիւղերու ընկերուհիները այս երկուշաբթի ժամը չորսին, Ուէժանի վերնայարկը: Օրակարգ.— Հաշուետուութիւն «Մանուկներու Օր»ուան: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ (Յունուար 17) ժամը 16ին, Քաֆէ Ռեժան: Շատ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

ՊԱՆԵԼՈՅ – ՔԱՇԱՆ.— Կապ. Խաչի ընդհ. ժողովը այս Շաբաթ ժամը 15.30ին, Տիկին Հանչէրեանի բնակարանը: Բոլորի ներկայութիւնը անհրաժեշտ է:

ԵՐԻՏԱՍԱՐԴ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԱԿԱՆՆԵՐՈՒ հերթական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ այս Շաբաթ, ժամը 21ին, Հ. Բ. Ը. Միութեան կեդրոնատեղին, 11 Սքուար Ալպոնի, Փարիզ (16): Դասախօս՝ Պ. Հ. ԹՈՐՈՍԵԱՆ: Նիւթը՝ 11–14րդ Դարերու խաչակիրներուն եւ Հայերուն ունեցած յարաբերութեան մասին: Մուտքը ազատ է:











## ՏՕՆԱԾԱՌ – ՀԱՆԴԷՍ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Նախաձեռնութեամբ Կապոյտ Խաչի Կրընոպլի մասնաճիւղին՝ «Մանուկներու Օր»ը կը տօնուի մեծ պատրաստութեամբ եւ գեղարուեստական ճոխ յայտագրով, այս կիրակի ժամը 15ին, Րիւ Ժէի սրահին մէջ:

## ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի առաւօտ ժամը 10ին, քառաձայն պատարագ պիտի մատուցուի Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցիին մէջ եւ յաւարտ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի՝

ԱՌԱՔԵԼ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱՅԻ

մահուան 5րդ տարեդարձին առթիւ: Կը հրաւիրուի հասարակութիւնը:

## ՊՈՄՈՆԻ ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ

18 Յունուար, կիրակի.— Բարեկենդան Ս. Սարգիսի, սկիզբ առաւօտեան ժամերգութեանց ժամը 8.30ին, հանդիսաւոր Ս. պատարագ եւ հոգեհանգիստ, ըստ հանգուցեալ Տիկին Վալանթին Զամպագճեանի որոշ կտակին:

## 1959 ՄԻՈՒԹԵԱՆ ՇԱԲԱԹ

Կիրակի Յունուար 18, ժամը 16ին Նօթր Տամ տը Լօրէթի եկեղեցիին մէջ նախագահութեամբ Պ. Րիւէի (Փարիզի երեսփոխան):

ՀԱՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ ԵՒ ԻՐ ՀԱՒԱՏԱՐՄՈՒԹԻՒՆԸ ԽԱՉԻՆ

Փիէր Ռօնտօ (*արեւելագէտ – գրագէտ*) եւ Փօլ Պէրթրան տը լա Կրասիէռ:

Գունաւոր ժապաւէններ (*փաստանկար*)





**Imprimé sur les presses du journal HARATCH**
17, Rue Bleue. 17 — PARIS (9e)

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՔՈՒՊԱՅԻ մէջ Պաթիսթայի կողմնա-կիցներուն դատավարութիւնը սկսաւ, միւս կողմէ, յեղափոխութեան ղեկավար Ֆիտէլ Գասթրօ յայտարարեց.— «Ամէ-ըկացիներուն պիտի չծախուիմ եւ հրա-հանգներ պիտի չստանամ անոնցմէ»:

ՄԱԿի Ընդհանուր Ժողովի լիբանանցի նախագահ Շարլ Մալիք յայտարարեց թէ «շատ մօտ ատենէն» համայնավար Չի-նաստան պիտի ընդունուի ՄԱԿի մէջ, ա-ւելցնելով թէ այս հարցին մէջ Միացեալ Նահանգներու ընդդիմութիւնը արդէն սկսած է տկարանալ եւ պիտի գայ ժամա-նակը, երբ Ամերիկան ալ պիտի ստիպուի ընդունիլ:

ԱՆԳԼԻՈՅ խորհրդային դեսպան Ժա-քոպ Մալիք ինը շաբաթ Խ. Միութիւնը մնալէ ետք վերադարձած է Լոնտոն. կը կարծուի թէ Մալիք պիտի ձգէ Անգլիոյ մէջ իր ունեցած պաշտօնը:

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԸ հնարած են ելեկտրական կեդրոն մը, փոքր ծաւալով (հազիւ երկու քիլօ) որ կը գործէ հիւ-լէական ուժով, 14 ս. մ. երկայնութիւն ունի եւ տասը ս. մ. տրամագիծ: Ելեկ-տրական մարզին մէջ շատ կարեւոր գիւտ մը կը նկատուի ասիկա:

ՍՊԱՆԻՈՅ շինութեանց նախարար Առեղ յայտարարեց թէ ամբարտակի քանդու-մով կործանած Ռիվարելակօ գիւղը կա-ռավարութեան կողմէ պիտի շինուի. ար-դիական 70 բնակարաններ պիտի կառու-ցանուին, աղէտին երեք հարիւր վերապ-րողներուն համար:

ՌՈՆՔՈՒՐԻ (Մոզէլ) երկաթի հանքին մէջ արկած մը պատահեցաւ առջի օր, հինգ հանքագործներու մահուան պատ-ճառ դառնալով. երկու ուրիշներ ծանրօ-րէն վիրաւորուած են:

ՓԱՐԻԶԻ մէջ Սէնի բարձրանալը սկսած է մտահոգիչ դառնալ. կը կարծուի թէ Յունուար 18–19ին ջուրերուն մակար-դակը պիտի հասնի վեց մեթր 20ի, մինչ առջի օր կը գտնուէր 5·38 մեթրի վրայ: Գետերու վրայ նաւարկութիւնը ընդհատ-ուեցաւ Փարիզի շրջանին մէջ: Շաբաթ առաւօտ մշուշի խաւը պատած էր մայրա-քաղաքը:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Դաստակեան եղբայրներէ տասը հազար ֆրանք:

Կը խնդրուի նուէրները ղրկել հետեւեալ հասցէին.—

Maison de la Culture Arménienne
51, Rue Mr.-le-Prince, Paris 6e
Chèque Postal : 5460-11

### ՆՈՒԷՐ

Տէր եւ Տիկին Արամ Մարտիրոսեան ի-րենց մեծ մօրեղբօր՝ Արշակ Մուշեղեանի մահուան առթիւ հազարական ֆրանք կը նուիրեն Մշակոյթ Տան Շ. Միսաքեան սը-րահին եւ հանգստեան տան:

(Ստանալ «Յառաջ»էն):

### ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Նոր տարուան առթիւ Հայ Կարմիր Խա-չի Ֆէօանվիլիէի օգափոխութեան կայա-նի ընդարձակման ի նպաստ կը նուիրեն.

Պ. Ալեանաքեան տասը հազար ֆրանք, Տիկին Մուրատեան եւ Ժ. Օ. Մ. հաստա-տութիւն հինգ հազարական ֆրանք, Օր. Տիրուհի Անդրանիկեան երեք հազար, Պ. Ն. Գույումճեան (Մարսէյլ), Պ. Պ. Համճեան (Նիս), Գիզիլեան (Սէվրան), Տիկին Մաքրուհի Արուլեան (Մըլէօն), Պ. Պ. Գուստիկեան, Գոճիկեան (Վալանս), Թէքէեան (Նիս), Սրրմաքէշեան (Ալֆոր-վիլ) երկու հազարական ֆրանք, Պ. Պ. Պահատուրեան (Լիոն), Գօճապաշեան (Մարսէյլ), Մանուկեան (Լուար է Շէր) հազարական ֆրանք:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ,— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խում-բի ժողովը այս Երկուշաբթի, ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:

Ց. Կ. Խաչի Կեդր. վարչութիւնը մէջ-մասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փա-րիզի շրջանի մասնաճիւղերու ընկերու-հիները այս երկուշաբթի ժամը չորսին, Ռէժանի վերնայարկը: Օրակարգ.— Հաշ-ուետուութիւն «Մանուկներու Օր»ուան: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:





### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Լիոնի վարչութիւնը իր կազմակերպած «Մանուկներու Օր»ուան հանդէսին առթիւ հրապարակաւ շնորհա-կալութիւն կը յայտնէ անխտիր բոլոր այն հայրենակիցներու եւ մասնաւորապէս ա-ռեւտրականներուն, որոնք դանազան նը-ւէրներ ըրին:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Չո-րեքշաբթի ժամը 9ին, Քաֆէ Քատէի սը-րահը: Հիւրաբար քաղաքս գտնուելով Հ. ՊԵՏՐՈՍ ՎԱՐԴ. ԱԼԱՃԱՃԵԱՆ, պիտի պատմէ ինչ որ տեսած է Խ. Միութեան զանազան քաղաքներուն մէջ 1942է 54:

Կը խնդրուի ճշդապահութիւն: Մուտքը ազատ է:



Imprimé sur les presses du journal HARATCH
—— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) ——

կուլիլ գիտենք, բայց կը մտածենք որ պատերազմը զարհուրելի բան մըն է, ապէտ մը ։

Ապա Խ. Միութեան փոխ – վարչապետը յարձակեցաւ Պոնի կառավարութեան վրայ ։ «Արեւմտեան Գերմանիան երկու Գերմանիաներու վերամիացումը չուզեր այլ կ՚ուզէ կլլել Ժողովրդավար Գերմանիան» ։

Միկոյեան քննադատած է նաեւ Ատրնաուըրը եւ ճշդած թէ Պերլինի համար խորհրդային ծրագիրն է լաւագոյնը ։

Միւս կողմէ քաղաքական շրջանակները կը կարծեն թէ մօտ ապագայի մը մէջ Անաստաս Միկոյեան պիտի փոխարինէ Կրեմլիքօն խորհրդային գիտնականութեան գլուխը՝ այսինքն արտաքին նախարարի պաշտօնը ստանձնելով ։ Մոսկուա շատ խիստ եւ ոչ ճկուն կը գտնէ Կրեմլիքոյի վարուելակերպը որ այլեւս չի համապատասխաներ օրուան պահանջներուն ։

## ՇՈՒԳԵՇԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Լեւոն Մոզեան, Պ. Հայկ Մոզեան, Տէր եւ Տիկին Արամ Մոզեան, Տէր եւ Տիկին Ժիրայր Տամլամեան եւ զաւակները, ինչպէս նաեւ բոլոր ընտանեկան պարագաները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց ամուսնոյն, հօր եւ մեծ հօր ողբացեալ՝

ԼԵՒՈՆ ՄՈԶԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցիին մէջ ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները ։

×

Պ. Թադէոս Այվազեան, Տէր եւ Տիկին Յովհ. Քիւրքճեան, Տէր եւ Տիկին Միհրան Քիւրքճեան, Տէր եւ Տիկին Հայկազ Քիւրքճեան, Տէր եւ Տիկին Հաճի Քիւրքճեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Աչըքկէօզեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս Կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ ողբացեալ

ԳՐԻԳՈՐ ԱՅՎԱԶԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ ։ Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները ։

## ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆ

Այրի Տիկին Ալիս Ծունկուրտաեան պատիւ ունի ծանուցանելու իր զաւկին՝

ՀԱՅԿՈՒՀԻԻ

ամուսնութիւնը Պ. ԿԱՍԹՈՆ ԳԱԲՐԻԷԼ ՓԷԼԸՎԷԻ հետ, որ կատարուած է Յունուար 17ին, Ալֆորվիլի Ս. Պ. Պ. եկեղեցին, ընտանեկան շրջանակի մէջ ։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը Դեկտեմբեր 28ի իր պարահանդէսին առթիւ շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները .— Պ. Պ. Ս. Էլճիպաշեանէ հինգ հազար ֆրանք, Մեսրոպ Թորոսեանէ (Ռօան) հինգ հազար, Բժ. Գրիգորեանէ հազար, Նուպար Յովհաննէսեանէ երկու հազար, ինչպէս նաեւ սրճաղաց մը ։ Տիկին Տըպրէէ երկու հազար, Պ. Գրիգորեանէ հինգ հարիւր, Պ. Տիրան Ոսկերիչեանէ հինգ հարիւր ։ Ինչպէս նաեւ ընկերուհիներու կողմէ 17.500 ֆրանք ։

Այս առթիւ մասնաճիւղը իր ջերմ շնորհակալութիւնները կը յայտնէ նաեւ այն բոլոր անձնաւորութեանց որոնք իրենց նուէրներով ճոխացուցին այդ օրուան պիւֆէն եւ վիճակահանութիւնը ։

Շնորհակալութիւն նաեւ ամէն անոնց որոնք գեղարուեստական բաժնին իրենց թանկագին օժանդակութիւնը բերին ։

— Ֆ. Կապ. Խաչի Կեդր. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Պ. Ալպէռ Աչճեանէ հինգ հազար ֆրանք ։

Կեդր. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է նաեւ Գ. Կիւլպէնկեան հաստատութենէն նոր տարւոյ առթիւ հարիւր հազար ֆրանքի նուիրատուութիւնը ։

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ

Կը տօնուի Տէսինի մէջ, նախաձեռնութեամբ՝ Ֆ. Կապոյտ Խաչի Տէսինի մասնաճիւղին եւ մասնակցութեամբ Աղգային դպրոցի ու կրթական մարմնին ։

25 Յունուար, Կիրակի կէսօրէ ետք, ժամը երեքին, Հ. Յ. Դ. Տան սրահը ։

Գեղարուեստական բաժին .— Արտասանութիւններ, երգեր եւ սիրուն անակնկալներ դպրոցին աշակերտներուն կողմէ, ղեկավարութեամբ ուսուցիչ Պ. Թրագոշի ։ Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր ։ Մուտքը ազատ է ։

## ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 21էն մինչեւ լոյս ։ Նախաձեռնութեամբ Կրընոպլի Հ. Յ. Դ. Նոր Սերունդի «Վարուժան» խումբին ։

**Pavillon d'Armenonville**
Parc P. Mistral

Ծանօթ նուագախումբ ։

## ՊԱՏԱՐԱԳ

Յունուար 27ին, Երեքշաբթի ժամը 10ին Փարիզի Մայր եկեղեցիին մէջ ձայնաւոր պատարագ պիտի մատուցանէ

## ԳԵՐՊ. Կ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

Լօվը տ'Օռիանի բարեկամաց Միութեան տարեդարձին առթիւ ։

## ԽՆՋՈՅՔ – ՀԱՆԴԷՍ

Պանեէօյ – Քաշանի Ֆ. Կապ. Խաչի մասնաճիւղը կազմակերպած է խնջոյք – հանդէս մը, այս Կիրակի ժամը 15.30էն սկսեալ Սալ Վոտէյի մէջ 69 Րիւ տ'Արքէօյ (Պանեօ) ։

Գեղարուեստական խնամուած բաժին, պատրաստուած Պանեէօյի եւ Առնուվիլի Նոր Սերունդի խումբերու կողմէ ։

Մատչելի պիւֆէ ։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԿՈՂՄԷՆ

Կիրակի, Փետրուար 8, ժամը 15.30ին

Կը ներկայացուին՝

ՍԵՊՈՒՀ ՄԻՆԱՍԵԱՆԷՆ — Ադուարդ – Իշխան ։ Հայաստանի անկախութեան դրուագ մը, Հայ – Մակեդոնական շրջանէն ։

COURTELINE - L'ARTICLE 330

ԶԱՒԵՇՏ ՄԷԿ ԱՐԱՐ

ՊԱՐՈՆԵԱՆԻ Մեծապատիւ Մուրացկաններէն տեսարաններ ։

Ծիծաղաշարժ միջնարարներ

Սիրով կը հրաւիրուին բոլոր ազգայինները ։

## ՑՈՒՑԱՏԵՍԴ

—o—

ՄԱՐՍԷՅԼ .— Շրջ. Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ ։

—Այս Շաբաթ, ժամը 21ին, «Ակնունի» ենթակոմիտէի բոլոր ընկերները ։

Կարեւոր օրակարգ ։

Ներկայ կ՚ըլլան Շ. Կ.էն երեք ընկերներ ։

— «Քրիստափոր» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրուի այս Կիրակի, ժամը 15ին ։ Կարեւոր օրակարգ ։ Ներկայ կ՚ըլլան Շ. Կ.էն երեք ընկերներ ։

## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ՍԵՎՐԱՆԻ ՄԷՋ

Այս Կիրակի երեկոյեան ժամը 18ին, Սեվրանի Մայր եկեղեցւոյ մէջ հայածէս ձայնաւոր պատարագ պիտի մատուցուի, Առնուվիլի Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ մատրան երկսեռ երգչախումբին մասնակցութեամբ ։ Սեվրանի եւ շրջանի հաւատացեալ հայ հասարակութենէն կը խնդրուի ներկայ գտնուիլ ։

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մէթրօ Փորթ Մայեօ կամ Շամփէրէ

Այս Կիրակի առաւօտ ժամը 10.45ին, կը խօսի վերապատուելի ՍԻՄԼԵԱՆ ։ Նիւթ՝ Գործնական քրիստոնէութիւնը ։



Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —

Եփրատ, գետ միջերկրական· հա-րեւաններդ կիրակնօրեայ ՚ հագուստ են հագեր արդէն, կամուրջէն ան-դին: Ազատութիւն: Հայրենիք: Ա-րեւելքէն Արեւմուտք: Մինչեւ ծո-վափ:

Եփրատ, արքայազուն անժա-ռանգ, ժողովուրդ մը կը ծաղկի հարեւան Արաքսի ափերուն վրայ:

Իսկ դո՞ւն: Դեռ երկա՞ր «ի վերայ աւերակաց»: Դէմ դիմաց համատա-րած ամայութեան, ուրկէ բուերն անգամ խոյս կուտան խունկայա-հար:

Ե՞րբ կը բացուի խորհուրդը խո-ժոռ ալիքներուդ որ կը թաւալին սա կամուրջէն վար:

Եփրատ, անգիր պատմութիւն ազ-գային եւ միջազգային,

Բարութիւն, զօրութիւն, խորու-թիւն:

Ամբողջ բազմութիւններ կը հալին ձայնիդ կարօտէն:

Ե՞րբ կը շաչեն փրփրադէզ ալիք-ներդ, իբրեւ շեփոր աւետաբեր:

Ե՞րբ ջուրերդ վերստին կը դառ-նան օրհնաբեր անձրեւ Հայաստան-եայց արտերուն, այգիներուն, ածու-ներուն:

Լուսացնցող շատրուանը Ազա-տութեան եւ աշխատանքի:

1948

•••••••••••••••••• ••••••••••••••••••

Մեր երգը պիտի ըլլայ միշտ, «Առաւօտ Լուսոյ»: Բոլոր ճակատ-ներուն վրայ: Բոլոր ցամաքներուն վրայ: Ծովուն դիմաց թէ լերան ստորոտը:

Որքան խուսափի «Արեգակն ար-դար», այնքան պիտի դառնանք ժիր: Ըմբոստ եւ տոկուն:

1 *Յունուար* 1956

•••••••••••••••••• ••••••••••••••••••

Մեռելները կը տրտնջային, իրենց փոսացած աչքերը խրելով համա-տարած խաւարին մէջ:

— Մենք չտեսանք ո՛չ Եւրոպան, ո՛չ Ամերիկան: Հարեւան լեռն եղաւ մեր հորիզոնը, եւ կամ ծովափը: Մենք մեր մտքի պաշարն ստացանք դաշտերէն եւ գիւղերէն, պակասը լրացնելով յետամնաց քաղաքներու մէջ:

Դուք, ահա տարիներէ ի վեր փո-ռուած լուսացնցող ափերու վրայ, ազատ եւ անվտանգ, դուք ինչո՞վ կ'ապացուցանէք ձեր առաւելու-թիւնները: Ո՞ւր է շօշափելի արտա-յայտութիւնը ձեր կորովին ու մտ-քին, ձեր գերազանցութեան, ի խն-դիր այն երկունքին որ լճացաւ մեր արեան ճապաղիքներուն մէջ:

Մեռելները դեռ ուրիշ բաներ ալ կը խօսէին, բայց ....

Շ.

24 *Ապրիլ*, 1938

## ԾԱՂԿԵՊՍԱԿ

———օ———

*Երկու տարիներ սահեր են արդէն այն օրէն ի վեր, երբ ցուրտ հողին յանձնե-ցինք մեր հէգ Շաւարշը:*

*Եկեր էին բոլորը, նոյն իսկ հեռաւոր գաւառներէն, ընկեր թէ բարեկամ, իրենց վերջին յարգանքի տուրքը տալու անհե-տացող դրչի վարպետին:*

*Դեռ երէկ էր կարծես, արցունքը մեր աչքերուն՝ բոլորուած էինք իր դագաղին շուրջը, գերեզմանատան մէջ, ու երբ քա-հանան իր վերջին աղօթքը լրացուց, փափաքեցանք որ ան վերջին անգամ մը եւս լսէ իր այնքան սիրած կուսակցու-թեան քայլերգը: Որքան յուզիչ էր պա-հը: Յուղարկաւորները միաբերան թղա-ցուցին «Մշակ բանուոր»ը արձագանգ տալով գերեզմանատան ցուրտ շիրիմնե-րուն:*

*Երկու տարիներ են սահեր ... տակա-ւին աչքիս առջեւ կը պատկերանայ սա-կայն իր դէմքը ամէն անգամ որ մտնեմ խմբագրատունէն ներս: Այնտեղ է ան, կարծես, նստած՝ գրասեղանին առջեւ, աջ կողմը, ձեռագրի մը վրայ հակած:*

*Ու մանաւանդ ամէն անգամ որ կը մտ-նեմ «Մշակոյթի Տուն»ը, իր ձայնն է որ կուգայ ականջիս· «Առնենք այս տունը, երիտասարդները ազատենք սրճարաննե-րու անկիւններէն»:*

*Տարաբախտ Շաւարշ, առինք տունը, կը վերանորոգենք զայն, որքա՜ն պիտի ուզէինք սակայն քեզ տեսնել հոն՝ գրա-սենեակի մը մէջ, գրիչը ձեռքիդ: Ի՜նչ ոգեւորութեամբ խմբագրականներ պիտի գրէիր արդեօք, թմրած հոգիները հրա-հրելու: Որքա՜ն պիտի տաքցնէիր մթնո-լորտը մշակոյթի այդ պատերէն ներս:*

*Յիշատակդ յարգող ընկերներդ ու բա-րեկամներդ սրահը ձօնեցին քու անուա-նդ, պիտի զարդարեն զայն քու եւ ան-գարձ մեկնող դրչի ընկերներուդ նկար-ներով ու հայ երիտասարդները, որ այն-քան սիրեցիր՝ հոն պիտի թնդացնեն ազ-գային երգը, վստահ եղիր:*

*Պատանի տարիքէս ճանչցեր էի գինքը Պոլիս: Գրատուն մը ունէր, որու ցուցա-փեղկին մէջ տեսայ, օր մը, Ահարոնեանի «Հայորդիներ»ը: Գնեցի գիրքը, որ ա-ռաջին կայծը դրաւ հոգիիս մէջ:*

*Վառվռուն երիտասարդ էր Շաւարշ այն ժամանակ, ու բնաւ չէի երեւակայեր թէ պիտի գտնէի զինքը Փարիզ, տասնեակ տարիներ ետքը, ճերմկած մազերով եւ չարաչուք օր մըն ալ իր յուղարկաւորը պիտի ըլլայի:*

*Սիրելի Շաւարշ, մահուանդ երկրորդ տարելիցին առթիւ, յիշատակի եւ յար-գանքի սա քանի մը տողերը ընդունէ իբր համեստ ծաղկեպսակ քու ցուրտ շիրիմիդ վրայ:*

*Պ. ԶՊՈՒՔՃԵԱՆ*

Ինձ թաղէք, երբ կարմիր վերջալոյսն է մարում,
Երբ տխուր, զգուանքով արեգակը մեռնող
Սարերի արծաթէ կատարներն է վառում,
Երբ մթնում կորչում են ծով ու հող...

Ինձ թաղէք, երբ տխուր մթնշաղն է իջնում,
Երբ լռում են օրուայ աղմուկները զուարթ,
Երբ շողերն են մեռնում, ծաղիկները — ննջում,
Երբ մթնում կորչում են լեռ ու արտ:

Իմ շիրմին դալկացող ծաղիկներ ցանեցէք,
Որ խաղաղ ու հանդարտ մահանան
Ինձ անլաց թաղեցէք, ինձ անխօս թաղեցէք·
Լռութի՛ւն, լռութի՛ւն, լռութի՛ւն անսահման...

*ՎԱՀԱՆ ՏԷՐԵԱՆ*

## 1958Ի ԱՄԷՆԷՆ ՇԱՏ ՍՊԱՌԱԾ ԳԻՐՔԵՐԸ

◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆◆

*Փարիզեան կարեւոր շաբաթաթերթե-րէն՝ Լէ Նուվէլ Լիթէրէր հրատարակիչ-ներու դիմելով ստացած է 1958ի ընթաց-քին ամէնէն շատ սպառած գիրքերու ա-նուններն ու տպաքանակները: Հետաքրք-րական է անշուշտ այս ցանկը, նկատե-լով որ ընթերցասէրներու ջախջախիչ մե-ծամասնութիւնը կ'ուզէ գիտնալ թէ ընդ-հանրապէս ո՞ր հեղինակները կը կար-դացուին:*

*Տեղական գրեթէ բոլոր օրաթերթերը հրատարակեցին այս ցանկը, գնահատա-կան տողեր նուիրելով աշխատանքին եւ գաղափարին: Արդարեւ, թիւերն ու ա-նունները կը ներկայացնեն պատկեր մը, որ մէկ տարուան գրական կեանքին հա-րազատ հայելին է· աւելի խօսուն՝ քան թէ որեւէ գրախօսական կամ յօդուած:*

*Ստորեւ կը հրատարակենք շաբաթա-թերթին կողմէ հաւաքուած անուններն ու թիւերը:*

| ԳՐՔԻ ԱՆՈՒՆ | ՀԵՂԻՆԱԿ | ՏՊԱՔԱՆԱԿ |
|---|---|---|
| Տոքթ. Ժիվակօ, | *Պ. Փասթերնակ* | 300·000 |
| Ամէն գնով արձակուրդ | *Փ. Տանինօս* | 260·000 |
| Սէն – Ժերմէն կամ բանակցութիւնը, | *Ֆ. Վալտէր* | 120·000 |
| Երկնային կայսրութիւն, | *Ֆր. Մալէ – Ժորիս* | 120·000 |
| Հանդիպումը, | *Հ. Թրուայեա* | 117·000 |
| Առիւծը, | *Ժ. Քէսէլ* | 108·000 |
| Կարծածէդ աւելի ուշ է, | *Ժ. Սեսպրօն* | 100·000 |
| Աշխարհի Ամբողջ հիմուրը, | *Փ. Տանինօս* | 100·000 |
| Ուղղութիւն՝ Երկիր, | *Ժ. Կրանմուժէն* | 90·000 |
| Մեծ խենթուկը | *Պ. Փուարօ Տելփէշ* | 85·000 |
| Ցտեսութիւնի, Տոքթ. Ռոշ | *Ա. Սուպիրան* | 80·000 |
| Ռազմիկին հանգիստը | *Ք. Ռոշֆոր* | 77·000 |
| Լեզարտը | *ԷՏ. Կլիսան* | 65·000 |
| Կարգապահ աղջկան մը յուշերը | *Ս. Տը Պովուար* | 62·000 |
| Հիւսիսի լոյսը | *Ա. Ժ. Քրօնէն* | 60·000 |
| Սուրբ շաբաթը | *Լ. Արակօն* | 55·000 |
| Հրեշտակներու մարքիզուհին | *Ա. եւ Ս. Կոլոն* | 55·000 |
| Հոգիներու մեծ դարը | *Տանիէլ – Ռոփս* | 55·000 |
| Մեծ ճարճատումներու դարը | *Տանիէլ – Ռոփս* | 55·000 |
| Փէքինի նամակը | *Փըրլ Պըք* | 53·000 |
| Փարիզի եւ Փարիզցիներու պատմութիւնը | | 52·000 |
| Ալնայի հարիւրամեակը | *Մ. տը Լա Ռոշ* | 50·000 |
| Միսէ դիմակը | *Վան Տէր Մերշ* | 42·000 |
| Սիրահար միամիտը | *Փ. Կիւթ* | 42·000 |
| Աքիւ – Աքիւ | *Թ. Հէյտէրտալ* | 38·600 |
| Ս. Վեմը | *Փ. Պընուա* | 38·000 |
| Տանջանքներ | *Մ. Ա. Տէմարէ* | 36·000 |
| Նամակը կառքի մը մէջ, | *Լ. Տը Վիլմորէն* | 35·000 |
| Անճելօ | *Ժ. Ժիոնօ* | 35·000 |
| Բարբարոսին երկիրը, | *Ժ. Ուկրօն* | 35·000 |
| Աղեքսանդր Մեծ | *Մ. Տրիւոն* | 33·000 |
| Փնտռելով՝ Թասիլիի որմանկարները | *Հ. Լոթ* | 32·000 |

ուի: Աքար սու: *Դուք ճշդեցէք* պաքար հայվանը:

*Գաղափա՛ր չունինք սերունդներու պայքարին մասին,ահա թէ ինչո՛ւ յիմա-րի նմանցուցած են Արտաւազդը՝ մեր վարժապետներուն շարադրած Հայոց Պատմութիւնները:*

*Կը զարմանաս որ, մեր մէջ, ամէն օ-րէնք եւ աւանդութիւն Աստուածաշունչ Մատեանէն քաղելով հանդերձ, իմաս-տութիւն ու գործելու իրաւունք առանձ-նաշնորհ տրուած են ծերերուն: Մովսէ-սի կը նետէր յիսունէն վեր իմաստուն-ները եւ հանրային գործիչները՝ աթոռնե-րը տալու համար երիտասարդներուն, — այն տարիքին, որ ոչ միայն խանդավա-ռութիւն կը դնէ պատասխանատուութեան մէջ, այլ եւ անծանօթ կը մնայ վարա-նումներու եւ խարխափումներու: Վճռա-կանութիւնը տարիքի հարց է առաւելա-գոյն չափով: Ահա թէ ինչո՛ւ Մովսէս եւս արգիլեց պաշտօնէ դադրեցնել ով որ կը լրացնէր յիսուն տարին· «Ի յիսնամե-նից՝ ի բաց կացցեն ի պաշտամանէ ան-տի, եւ ոչ եւս գործեսցեն»* (Թուոց, Ը. 25):

*Օրմանեան, որ Աստուածաշունչ Մատ-եան է կարդացած, «խօլական» կ'անուանէ երիտասարդութիւնը, ու խիստ քննադա-տութեան մը կ'ենթարկէ Իզմիրլեանը.— «Միակ կէտը, որ Իզմիրլեանէ չէր ըս-պասուեր, նորահաս երիտասարդութեան խորհուրդները փորձառու խոհականու-թեան խորհուրդներուն նախադասելն է»:*

*Հետեւա՞նքը.—*

*«Ընկճուած եւ անօգնական ժողո-վուրդը տարափի պէս սկսաւ տեղացնել գղջական յայտարարութիւններ, վեհապե-տին (Ապտիւլ Համիտի) շնորհապարտ, պաշտօնեաներէ գոհ, կացութեան համա-կերպող, հրամաններու հնազանդ խոստո-վանելով զինքն եւ անտրտունջ ընդունե-լով որ կոտորածէ ազատուածները իբրեւ ոճրագործներ բանտերը լեցնեն եւ զատա-րաններով ծանր պատիժներու ենթար-կեն»:*

Սումխիոնի *այս ահաւոր, այս ամօ-թալի պատկերին պատասխանատուութիւ-նը գիտէ՞ք թէ որո՛ւ վրայ կը նետէ Օր-մանեան, — Իզմիրլեանի:*

Օյինպազութեա՛ն *նայեցէք:*

*Բայց ինչո՞ւ եւ որո՞ւ դէմ ըմբոստա-ցաւ երիտասարդութիւնը, մերժելով այն քաղաքականութիւնը, որ* քոմփլէքսներ *կը ստեղծէ երիտասարդութեան մէջ եւ ըսել կուտայ* Փատիշահըմ չոք եաշա *պոռա-ցող ժողովուրդի մը երեսին:*

*— Ինչո՞ւ չմեռար Բաբելոնի պարիսպ-ներուն տակ:*

*Վերջին յօդուածով մը՝ մեր դատա-պարտութիւնը Օրմանեանի մասին:*

*Շ. ՆԱՐԴՈՒՆԻ*

30000 *տպաքանակով հրատարակուած են հետեւեալ տասը գիրքերը.—*

Արուեստն ու մարդը *Ռընէ Իւկ*
Երկար սէր մը.— *Փըրլ Պըք*
Շահագրգիռ մենութիւն մը.— *Ֆ. Սոլէր*
Ըսէ թէ ով կը սիրես.— *Մ. Ա. Տէմարէ*
Լուվրի հրաշալիքները (*Տպ. Հաշէթ*)
Տիրոջ ձախ ձեռքը.— *Ու. Պարէթ*
Ապրելու խանդը.— *Ն. Ռէ*
Ամէն բան կարդաց.— *Պ. Ժորժ*
Մեծ դրախտը.— *Սամիվել*
Նափոլէոն.— *Լ. Մատըլէն*

*Փիէր Պուլի «Փրկութեան ճամբաները» տպուած է 26·000 օրինակ: Իսկ 25·000 օրինակով հրատարակուած են հետեւեալ գործերը.—*

Թուլուզ – Լոթրէքի կեանքը.— *Հ. Փե-րիւշօ*
Համաշխարհային պատմութիւն.— *Գ. Հատոր*
Գրականութեանց պատմութիւն.— *Գ. Հատոր*
Ժերալտ.— *Տ. Տիւ Մորիէ*
Առաջ եւ յետոյ.— *Ա. Տը Սէփէտէօ*
Մոտիլեանիի կեանքը.— *Ա. Սալման*
Ճերմակ վիհուկը.— *Է. Կուճ:*

*Շաբաթաթերթին հրատարակած ցանկը կ'երկարի, հասնելով մինչեւ տասը հա-զար տպաքանակի արժանացած գիրքե-րուն: Ուշագրաւ է որ աղմուկ ստեղծած կարգ մը գիրքեր կը գտնուին 25·000էն վար տպաքանակ ունեցող գիրքերու շար-քին: Ա. Լանուի «Պրիւժի ժամագրութիւ-նը» որ մամուլին կողմէ գնահատուեցաւ եւ կը սպասուէր որ* Կոնքուռի *մրցանակին արժանանայ՝ 21·000 օրինակ տպուած է, իսկ Ֆրանսուա Մորիաքի «Մարդու որ-դին» վէպը՝ միայն 13·000 օրինակ:*

*Միւս կողմէ, մինչ Պորիս Փասթերնա-քի* Տոքթ. Ժիվակօն *տարուան ամէնէն շատ սպառած գիրքն է (300·000), նոյն հեղինակին «Ինքնակենսագրութեան փորձ» գործը տասը հազարէն վեր չէ բարձրացած:*

*Սերժ Կրուսարի «Գեղեցիկ յոյսը» գոր-ծին տպաքանակը 11·000 է, իսկ Կրահամ Կրինի «16 Նորավէպեր»ը՝ 10·000:*

Ողջ ըլլան թէ մեռած, մտքի եւ ար-ուեստի մշակները բազմութեանց սրտին կը խօսին իրենց ստեղծա-գործութիւններով: Իրենց երկունքով եւ վաստակով:

Շ.

ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ համայնավար պատուիրակները հասած են Մոսկուա՝ մասնակցելու համար 21րդ համագումարին: Չինական պատուիրակութիւնը, բաղկացած հինգ հոգիէ, կը ղեկավարէ Վարչապետ Չու Ան Լէ, հետեւաբար՝ Մաօ Ցէ Թունկ չի մասնակցիր համագումարին: Ֆրանսական պատուիրկութիւնն ալ հասած է Մոսկուա, Ժագ Տիւքլոյի ղեկավարութեամբ:

ՅՈՎՀԱՆՆԷՍ ԻԴ. քահանայապետը անկնկալօրէն յայտնեց կիրակի օր թէ տիեզերական համագումար մը տեղի պիտի ունենայ յառաջիկային: Վերջին ժողովը տեղի ունեցած է 1870ին (20րդ էր) եւ բանաձեւած է Պապին անսխալականութիւնը: Այս ժողովը անսպասելի էր բոլորին համար: Կը կարծուի թէ Պապը այս առթիւ «Համաշխարհային եկեղեցւոյ միութեան» համար կ'ուզէ աշխատիլ եւ այդ իսկ նպատակով, համաձայն մամուլի Անսա գործակալութեան հաւանական կը թուի որ ժողովին կը հրաւիրուին նոյս ուղղափառ եւ յունադաւան եպիսկոպոսները: Չի կարծուիր սակայն որ նոյնը ըլլայ բողոքականներուն համար:

## ՓԵՏՐՈՒԱՐ 1ԷՆ

Համաձայն մամուլի ընկերակցութեան որոշումին թերթերու գիներուն վերաբերեալ՝ փետրուար 1էն Յառաջի գինն է՝

Հատը՝ 20 ֆրանք:

Ֆրանսա եւ հասարակապետութիւն՝

Տարեկան — 4090 ֆրանք:

վեցամսեայ — 2200 ֆրանք:

Արտասահման

Տարեկան — 5000 ֆրանք:

(Իտալիա 7000 լիր, Պելժիա 500 Պ. Ֆ. եւայլ): Արտասահմանի համար վեցամսեայ բաժանորդագրութիւն չընդունուիր:

## «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Շնորհակալութեամբ ստացանք Մարսէյլէն Տիկին Մարիամ Րէյիզեանէ հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Սերժ Սարգիսեանէ երկու հազար, իրենց եղբօր որդւոյն Աստուր Սարգիսեանի ամուսնութեան առթիւ:

### ՄԵՐ ՆՈՐԵՐՈՒՆ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Պոմոնէն Ստեփան Դարբինեան, որդին՝ Պոմոնի մեր ընկերներէն Նշան Դարբինեանի, բացառիկ յաջողութեամբ աւարտած է Մարսէյլի բժշկական ֆաքիւլթէն, ընդհանուր հիւանդութեանց բժիշկի տիտղոսով (տօքթէօր ան Մէտըսին ժէնէրալ) ու նշանակուած՝ այցելու-բժիշկ Մարսէյլի հիւանդանոցներուն:

× Այս ուրախ առիթով ընկեր Նշան Դարբինեան կը նուիրէ 1500 ֆրանք կապոյտ Խաչի Պոմոնի մասնաճիւղին, հազար ֆրանք «Յառաջ»ի տարածման ֆոնտին, հազար ֆրանք ալ «Հայ-Բոյժ»ին:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ.— Սէն Լուի Կ. Խ. մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է՝ Տիկին Ալնիւ Ս. Մարկոսեանէ հազար ֆրանք փոխան ծաղկեպսակի որբ. Այրի Տիկին Աննիկ Զաքարեանի տխուր մահուան առթիւ:

### ՍԱԼ ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Պ. Գրիգոր Մերձանօֆ Հայկանուշ Թորոսեանի սալերը կը նուիրէ հետեւեալ հաստատութիւններուն.—

Մխիթարեան Հայրերու վարժարանի, Փարիզ, երկու տուփ (թիւ 1, 2), Մոնմորանսիի ծերանոցին երկու տուփ (թիւ 1 – 2), Անտոնյի ծերանոցին երկու տուփ (թիւ 1 – 2), ինչպէս նաեւ Շահան Շահնուրի երկու տուփ (թիւ 1–2), մասամբ սփոփելու համար անոր առանձնացած կեանքը: Ստանալու համար դիմել Հայկանուշ Թորոսեանի, համապատասխան պաշտօնական ստացագրով:

### ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԻՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ՇՐՋԱՆԻ ՏԱՐԵԿԱՆ 28ՐԴ ՑԵՐԵԿՈՅԹԸ

Կիրակի 8 Մարտ, 1959, կէսօրէ վերջ ժամը 14.30ին, Սալ տը լա Շիմի: 28պիս, Րիւ Սէն Տօմինիք, Փարիզ (7), Մէթրօ Էնվալիտ:

Սկաուտական յայտագիր, հայկական պարեր եւ երգեր:

Ներկայացում եւ զուարճալիքներ:

Մուտք 300 եւ 500 ֆրանք:

## ՄԵԾ ԵՒ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հայ Կ. Եւ Մարտիկներու Միութեան:

Տեղի պիտի ունենայ 31 Յունուար, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ ուշ ատեն, Սալ տէ Ֆէթի մէջ:

Օրքէսթրը ՓԱՐԹԱՄԵԱՆ

Փարիզէն յատկապէս հրաւիրուած է երգելու.—

Օր. ՇԱՔԷ ՊԸՆԿԵԱՆ

Որ պիտի երգէ հայերէն եւ ֆրանսերէն:

Սիրով կը հրաւիրենք Վիէնի եւ շրջաններու Հայութիւնը՝ մասնաւորաբար Հ. Յ. Դ. Նոր Սերունդը, քաջալերելու Հայ երգը եւ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութիւնը:

Մուտք 300 ֆր.:

## ՊԱՏԱՐԱԳ

Յունուար 27ին, Երեքշաբթի ժամը 10ին Փարիզի Մայրէն եկեղեցիին մէջ ձայնաւոր պատարագ պիտի մատուցանէ

## ԳԵՐՊ. Կ. Վ. ԱՄԱՏՈՒՆԻ

Խօվը տ'Օրիանի բարենպաստ Միութեան տարեդարձին առիթով:

## ՀԱՅ - ԲՈՅԺ

### ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

——o——

Ասպլէսուն լոյս կը տեսնէ Հայ-Բոյժի Նոյեմբեր – Դեկտեմբեր թիւը (203–204), ճոխ եւ այլազան բովանդակութեամբ, 48 էջ.—

Մարդոց գիրէն ճանչնալ խլիրդը (քանսէր): Ի՞նչ է ալերգիկութիւնը, կանխազգուշութիւն ու դարմանում (Տօքթ. Նաւասարդ), Սեւանի աւազանը (Ք.): Գէր կիներուն յղութիւնը (Տօքթ. Լոքման): Խլիրդին ահազանգի նշանները (Փրոֆ. Տիւրրւէն): Ստամոքսի ընդլայնում (Տօքթ. Գալուստեան): Մեր ոտելուն մնասները եւ օգուտները (Տօքթ. Պլոնտէլ): Օգտագործել մեռելներուն արիւնը (Փրոֆ. Շարիմանեան՝ Երեւանէն): Եթէ կիները գիտնային (Ս. Նիկողոսեան): Աստմնորոյժին հասկացողը (Տօքթ. Գեղամ Այվազեան): Ծարպանիւթի անօթութիւն (Հայ – Բոյժ): Ինկաւ մարեցաւ (Խաչուհի): Այգիքներուն մէջ ճճի ունի (Տօքթ. Շ. Այվազեան): Փալլով եւ արդի մարդը (Տօքթ. Պօղոսեան Արշակ):

× Հայ – Բոյժի բացառիկը, բաժնեգինին վրայ 500 ֆրանք յաւելումով միայն պիտի ղրկուի բաժանորդներուն՝ Փետրուար մէկէն սկսեալ, ինչպէս յայտարարած էինք նախապէս, (Թղթատարական ծախքերու յաւելումը կ'արդարացնէր աւելի կանուխ բարձրացնել գինը):

× Հայ – Բոյժի համար դրամական ամէն առաքում կատարել Շ. Նարդունիի անունով, միշտ մանտա – քարթով, Յառաջի խմբագրատան հասցէով (գրել՝ ռէտաքսիոն «Յառաջ»,— չէնքին դանադան բաժանումներուն պատճառով), բայց երբեք Յառաջի չէք–փոսթալով:

Տարեկան բաժնեգինը ցնոր արօրինութիւն՝ 1200 ֆրանք, արտասահման 1500:




Imprimé sur les presses du journal HARATCH
— 17, Rue Bleue, 17 — PARIS (9e) —


## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԿՈՂՄԷՆ

Կիրակի, Փետրուար 8, ժամը 15.30ին

Կը ներկայացուին՝

ՍԵՊՈՒՀ ՄԻՆԱՍԵԱՆԷՆ — Ադուարդ – Իշխան: Հայաստանի անկախութեան դրուագ մը, Հայ – Մակեդոնական շրջանէն:

COURTELINE - L'ARTICLE 330

ՁԱՒԵՇՏ ՄԷԿ ԱՐԱՐ

ՊԱՐՈՆԵԱՆԻ Մեծապատիւ Մուրացկաններէն տեսարաններ::

Մեծապաշտպ մրջնարարներ

Սիրով կը հրաւիրուին բոլոր ազգայինները:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ.՝ Ագրիւր – Սեւրոր – Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքավայրը: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՓՈՐԹ ԻԹԱԼԻԻ շրջանի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի անդամական ընդհ. ժողովը այս Ուրբաթ, ժամը 16ին, Ժանթիյի հայկական դպրոցին մէջ: Ներկայ կ'ըլլայ Կ. վարչութեան ներկայացուցիչ ընկերուհի Տիկին Ալէքնիկիւլեան: Շատ կարեւոր օրակարգ:

Պ. Ենովք Մելքոնեան, Տէր եւ Տիկին Արշաւիր Մելքոնեան, Տէր եւ Տիկին Մանուկեան (Հայաստան), Այրի Տիկին Նուրիցայ Պէյլէրեան եւ զաւակները (Պոլիս), Տիկին Վարդանուշ Իլիւր եւ պարագաները, Տէր եւ Տիկին Կարապետ Փանոսեան, Տէր եւ Տիկին Գրիգոր Մելիքեան, Պ. Յարութիւն Մինասեան, ինչպէս նաեւ ազգականները ցաւ ի սիրտ կը ծանուցանեն իրենց սիրեցեալ կնոջ, մօր, մօրաքրոջ, քենեկալին՝

**ԽԱԹՈՒՆ ՄԵԼՔՈՆԵԱՆԻ**
(Եալովա Քիլիճ գիւղէն)

մահը։ Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Հինգշաբթի ժամը 13·30ին, Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը։

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։

## ԱՐՇԱԿ ՄՈՒՇԵՂԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Պ. Իսրայէլ Քէչեան իր ողբացեալ ընկերոջ Արշակ Մուշեղեանի յիշատակին երկու հազար ֆրանք կը նուիրէ «Յառաջ»ի բարգաւաճման։

## ՀԱՅԿ. ՁԱՅՆԱՍՓԻՒՌ Ս. ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի մէկ փետրուարին, ֆրանս. ժամով 10·30ին Վատիկանի ձայնասփիւռ կայանը, հայկ. Ս. պատարագ պիտի ձայնասփռէ հետեւեալ ալիքներուն վրայ.

Կարճ ալիք 19·84, 25·67, 31·10։

Միջին ալիք 196։

Բազմաձայն երգեցողութիւնը պիտի կատարէ Հռոմի հայ գաղութին երգչախումբը, ղեկավարութեամբ Եղիա Բասմաջեանին։ Ս. Պատարագէն յետոյ Յովհ. Իգ. Պապը մասնաւոր ունկնդրութիւն պիտի շնորհէ Հռոմի Հայ գաղութին, որուն պիտի առաջնորդէ Կարդինալ Աղաջանեանը։

## Ի ՅԱՐԳԱՆՍ
## ՏՈՔԹ. ԵՈՀԱՆՆԷՍ ԼԷՓՍԻՈՒՍԻ

Յայտնի հայասէր Տոքթ. Եոհաննէս Լէփսիուսի ծննդեան հարիւրամեակին առթիւ յարգանքի երեկոյ մը կազմակերպուած է Պերլինի մէջ, այս Կիրակի ժամը 16ին երաժշտանոցի սրահը։





## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի առաւօտ, Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ վարչութիւնը եւ հոգաբարձութիւնը հոգեհանգստեան պաշտօն կը կատարեն Սրբոց Ղեւոնդեանց տօնին առթիւ Փարիզի եւ շրջանի եկեղեցիներուն մէջ ծառայած վախճանեալ Տ. Գէորգ Արք. Իւթիւճեանի, Յովհաննէս քհնյ. Հինքէրպէյէնտեանի, Սահակ քհնյ. Իւթիւճեանի, Կոմիտաս քհնյ. Սրպեան, Բարնաբաս քհնյ. Խրնտամեանի, Արիստակէս քհնյ. Թորոսեանի, Մեսրոպ քհնյ. Մեսրոպեանի, Վահան քհնյ. Խոյեանի, Բարթող քհնյ. Թագըրճեանի, Գարեգին քհնյ. Տէօվլէթեանի, Մկրտիչ քհնյ. Արսլանեանի, Գէորգ քհնյ. Դաւիթեանի, Լեւոն քհնյ. Արսլանեանի, Գէորգ քհնյ. Նիգամեանի, Ներսէս քհնյ. Գանճեանի, Գրիգոր քհնյ. Ճէպէճեանի եւ Յուսիկ քհնյ. Ազատեանի, Վարդան քհնյ. Պաղտասարեանի, Գրիգորիս եպիսկոպոս Պալաքեանի հոգւոց հանգստեան։

×

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Մարիամ Աստուրեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի, Պուլվար Օտոյի Ս. Յակոբ եկեղեցիին մէջ, իրենց ողբացեալ ամուսնոյն եւ հօր՝

**ԵՐՈՒԱՆԴ ԱՍՏՈՒՐԵԱՆԻ**

մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին հանգուցեալի յիշատակը յարգողները։

×

Այրի Տիկին Սրբուհի Խշըրեան – Սիահի կը ծանուցանէ թէ յառաջիկայ կիրակի առաւօտ հոգեհանգիստ պիտի կատարուի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցին, իր ողբացեալ եղբօր՝

**ԴԱՒԻԹ ԽՇԸՐԵԱՆԻ**

յիշատակին, անոր մահուան երկրորդ տարելիցին առթիւ։

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները։

## ՓԵՏՐՈՒԱՐ 1ԷՆ

Համաձայն մամուլի ընկերակցութեան որոշումին թերթերու գիներուն վերաբերեալ՝ փետրուար 1էն Յառաջի գինն է՝

Հատը՝ 20 ֆրանք։

Ֆրանսա եւ հասարակապետութիւն՝

Տարեկան.— 4000 ֆրանք։

Վեցամսեայ.— 2200 ֆրանք։

Արտասահման

Տարեկան.— 5000 ֆրանք։

(Իտալիա 7000 լիր, Պելժիա 500 Պ. Ֆ. եւայլն)։ Արտասահմանի համար վեցամսեայ բաժանորդագրութիւն չընդունուիր։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Նիւէն Տէր եւ Տիկին Գ. Անդրէասեան իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, ծաղկեպսակով կամ նամակներով ցաւակցութիւն յայտնեցին իրենց մօր Մարիամ Անդրէասեանի մահուան առթիւ։

Շնորհակալութիւններ նաեւ Օտաճեան, Գրիգորեան, Զարիֆեան, Պալեան եւ Խսկիճեան ընտանիքներուն որոնք ոչ մէկ որդիական խնամք չեն խնայած հանգուցեալին վերջին օրերուն։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ
### ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՍԱՄՈՒԷԼ – ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒ ԿՈՂՄԷՆ

Կիրակի, Փետրուար 8, ժամը 15·30ին

Կը ներկայացուին՝

ՍԵՊՈՒՀ ՄԻՆԱՍԵԱՆԷՆ — Ագուարդ – Իշխան։ Հայաստանի անկախութեան դրուագ մը, Հայ – Մակեդոնական շրջանէն։

**COURTELINE - L'ARTICLE 330**
ԶԱՒԵՇՏ ՄԷԿ ԱՐԱՐ

ՊԱՐՈՆԵԱՆԻ Մեծապատիւ Մուրացկաններէն տեսարաններ։

Ծիծաղաշարժ միջնարարներ

Սիրով կը հրաւիրուին բոլոր ազգայինները։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ագրիւր – Սեւր – Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքավայրը։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Փոթորիկ խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին։

ՓՈՐԹ ԻԹԱԼԻԻ շրջանի Ֆ. Կ. Խաչի մասնաճիւղի անդամական ընդհ. ժողովը այս Ուրբաթ, ժամը 16ին, Ժանթիյի հայկական դպրոցին մէջ։ Ներկայ կ'ըլլայ Կ. վարչութեան ներկայացուցիչ ընկերուհի Տիկին Սէրէնկիւլեան։ Շատ կարեւոր օրակարգ։

## ՄԵԾ ԵՒ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հայ Կ. եւ Մարտիկներու Միութեան։

Տեղի պիտի ունենայ 31 Յունուար, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ ուշ ատեն, Սալ տէ Ֆէթի մէջ։

Օրքէսթրը ՓԱՐԹԱՄԵԱՆ

Փարիզէն յատկապէս հրաւիրուած է երգելու.—

Օր. ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ

Որ պիտի երգէ հայերէն եւ ֆրանսերէն։

Սիրով կը հրաւիրենք Վիէնի եւ շրջաններու Հայութիւնը՝ մասնաւորաբար Հ. Յ. Դ. Նոր Սերունդը, քաջալերելու Հայ երգը եւ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութիւնը։

Մուտք 300 ֆր.։

## ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնս կը ծանուցանէ Տէսինահայ յարգոյ հայ հասարակութեան թէ, այս կիրակի առաւօտ ժամը 8·30ին Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ։

Մ Ա Ր Ս Է Յ Լ

ՄՈՒՐԱՏ ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆԸ

Կը ծանուցանէ թէ տարեկան իր

**Պ Ա Ր Ա Հ Ա Ն Դ Է Ս Ը**

Տեղի պիտի ունենայ

31 Յունուար, Շաբաթ գիշեր,

Քլիւպի մէջ

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ (ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԻՒՆ)
## ՏԱՐԵԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Փետրուար 1, Կիրակի, ժամը 15 – 24

**LES AMBASSADEURS**
**3 Avenue Gabriel, Champs-Elysées**

Կը մասնակցին երկու հռչակաւոր նուագախումբեր

PIERRE DIEUZEY - JAZZ NEW ORLÉANS
PEPITO GOMEZ - TYPIQUE TANGOS

Գեղարուեստական ճոխ բաժին — Մուտք 500 ֆրանք

Կանխաւ ապահովել տոմսերը եւ սեղանները հեռաձայնելով Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին Էլիզէ 67 – 03։

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ.— Վարձուած սեղանները գրաւուած պէտք է ըլլան ամէնէն ուշը ժամը 19ուկէսին։ Հակառակ պարագային պարահանդէսին կազմակերպիչ Յանձնախումբը որեւէ պատասխանատուութիւն չի ստանձներ։






Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue. 17 — PARIS (9e)

Տէր եւ Տիկին Գրիգոր Պարոնվարդեան, Օր. Մառի Պարոնվարդեան, Տէր եւ Տիկ. Յարութիւն Աչրքկէօզեան (Պուքրէշ), Այրի Տիկին Էլիզա Բարակէօզեան, Տէր եւ Տիկին Երուանդ Ճիւհէրեան, Այրի Տիկին Զարդար Վէլէտեան, Օր. Բ. Վէլէտեան, Այրի Տիկին Շողիկ Վէլէտեան, Տէր եւ Տիկին Ասատուր Ասատուրեան, Տէր եւ Տիկին Համբարձում Վէլէտեան, Արամ Վէլէտեան, Սարգիս Վէլէտեան, Տէր եւ Տիկին Սէրճանեան, Տէր եւ Տիկ. Պետրոսեան, Տէր եւ Տիկին Արապեան, Այրի Տիկին Պարոնվարդեան, Տէր եւ Տիկին Մեծպաքեան, Տէր եւ Տիկին Շամիքեան, Պ. Թաւլոր Գառնիկեան, Տէր եւ Տիկին Արամ Գառնիկեան, ընտանիքները խորին ցաւով կը ծանուցանեն՝ իրենց հօրեղբօր, ազգականին, կնքահայրին, խնամիին, քաղաքացիին, բարեկամին՝

**ՆՇԱՆ ՊԱՂՏԱՏԼԵԱՆԻ**

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Յունուար 28ին, 69 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը այս Շաբաթ, Յունուար 31, ժամը 10.45ին Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պանեէօ Փարիզիէի գերեզմանատունը:

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապոյտ Խաչի Պուլվար Օտոյի մասնաճիւղը ցաւակցութիւն կը յայտնէ ընկերուհի Փարիզ Արմաղանեանի իր հօր մահուան առթիւ եւ այս տխուր առթիւ հազար ֆրանք կը նուիրէ Կապոյտ Խաչի կայանին եւ հազար ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման: (Կապոյտ Խաչի գումարը ստանալ «Յառաջ»էն):

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Լեւոն Մողեան եւ զաւակները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, փոխան ծաղկեպսակի նուէրներով կամ գրաւոր մասնակից եղան իրենց սուգին ողբացեալ՝

**ԼԵՒՈՆ ՄՈՂԵԱՆԻ**

մահուան առթիւ:

×

Փարիզի Կեդր. Կոմ. Յանձնաժողովը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները: Պ. Ստեփան Տամլամեան երկու հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Մութաֆեան հինգ հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Յարութիւն Տամլամեան երկու հազար ֆրանք ողբացեալ Պ. Լեւոն Մողեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի:

Պ. Ալպէռ Աչճեան տասը հազար ֆր. իր սիրեցեալ ծնողաց յիշատակին:

×

ԼԻՈՆԻ Ազգ. Միութիւնս շնորհակալութեամբ ստացած է Տէր եւ Տիկին Յակոբ Մամուրեանէ հինգ հազար ֆրանք, ի նպաստ եկեղեցւոյ շինութեան, իրենց զաւկին ամուսնութեան առթիւ:

### ԱԼՖՈՐՎԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Վարդանանցի առթիւ այս Հինգշաբթի առտու ժամը 10ին: Ներկայ կ'ըլլայ Ալֆորվիլի դպրոցի աշակերտութիւնը:





Imprimé sur les presses du journal HARATCH
17, Rue Bleue, 17 — PARIS (9e)

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տէր եւ Տիկին Երուանդ եւ Արմենակ Արապեաններ, Պ. Թովմաս Թօմաքինեան կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս կիրակի առաւօտ, յետ պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ, իրենց եղբօր, տագրոջ եւ քրոջ զաւկին՝

**ՆՈՒՊԱՐ ԱՐԱՊԵԱՆԻ**

մահուան քառասունքին առթիւ (մահը պատահած է Ամերիկայի մէջ):

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

### ՆՈՒԷՐՆԵՐ

Տէր եւ Տիկին Յովհ. Սիմոնեան եւ զաւակը Սարգիս – Աւետիս (Ալֆորվիլ) իրենց յոյժ սիրեցեալ եղբօր եւ հօրեղբօր Վահան Սիմոնեանի (Պոլիս) կսկծալի մահուան առթիւ, կը նուիրեն երկու հազար ֆրանք Աղքատախնամին, երկու հազար ֆրանք Մշակոյթի Տան, եւ երկու հազար ֆրանք Ֆ. Կ. Խաչի օդափոխութեան կայանին: (Առաջին երկու գումարները ստանալ «Յառաջ»էն):

## ՄԵԾ ԵՒ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հայ Կ. եւ Մարտիկներու Միութեան:

Տեղի պիտի ունենայ 31 Յունուար, Շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ ուշ ատեն, Սալ տէ Ֆէթի մէջ:

**Օրքէսթրը ՓԱՐԹԱՄԵԱՆ**

Փարիզէն յատկապէս հրաւիրուած է երգելու.—

**Օր. ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆ**

Որ պիտի երգէ հայերէն եւ ֆրանսերէն:

Սիրով կը հրաւիրենք Վիէնի եւ շրջաններու Հայութիւնը՝ մասնաւորաբար Հ. Յ. Դ. Նոր Սերունդը, քաջալերելու Հայ երգը եւ Կամաւորներու եւ Մարտիկներու Միութիւնը:

Մուտք 300 ֆր.:

### ՊԱՏԱՐԱԳ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Տէսինի Կրօն. Ընկերակցութիւնս կը ծանուցանէ Տէսինահայ յարգոյ հայ հասարակութեան թէ, այս կիրակի առաւօտ ժամը 8.30ին Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Փարիզի Թոքատի Հայր. եւ Ռոնի սու Պուայի Մշակութային Միութիւնները Գալաքեան սրբազանի եւ վեց քահանաներու դամբարանի կառուցման ի նպաստ միացեալ հանդէսը տեղի կ'ունենայ 4 Ապրիլ, Շաբաթ գիշեր Թէատրը Փօլ Ֆարալիք սրահին մէջ: Մանրամասնութիւնները մօտ ատենէն:



## «ՅԱՌԱՋ»Ի ԲԱՐԳԱՒԱՃՄԱՆ ՀԱՄԱՐ

Կարտանէն ընկեր Ն. Սարգիսեան իր եղբօր որդւոյն Ասատուր Սարգիսեանի ամուսնութեան առթիւ հազար ֆր. կը նուիրէ:

### ՀԱՅԿ. ՁԱՅՆԱՍՓԻՒՌ Ս. ՊԱՏԱՐԱԳ

Այս կիրակի մէկ փետրուարին, ֆրանս. ժամով 10.30ին Վատիկանի ձայնասփիւռ կայանը, հայկ. Ս. պատարագ պիտի ձայնասփռէ հետեւեալ ալիքներուն վրայ.

Կարճ ալիք 19.84, 25.67, 31.10:

Միջին ալիք 196:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ազրիլ – Սելոր – Մ. Եօթնեղբայրեան խումբի ընկերական ընդհ. ժողովը, այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքավայրը: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն «Համազասպ» ենթակոմիտէի բոլոր ընկերները ժողովի կը հրաւիրէ այս Ուրբաթ, ուր Շրջ. Կոմիտէն ներկայ պիտի ըլլայ իր կազմով: Ժամը 21ին:

× «Հայաստան» ենթակոմիտէի ընկերները ժողովի կը հրաւիրուին այս Շաբաթ օր, ժամը 21ին: Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէն իր կազմով: